

# ԴՅՈՒՑԱԶՆԸ

*ՍԱՄԱԹ ՇԱՔԻՐ (թաթար բանաստեղծ)*

Նվիրում եմ Արամ Միրզոյանին, որի ստորագրությունը կա Ռայխստագի պատին

Ի՛մ Միրզոյան, դու հերոս ես իսկական,
Քեզ լավ գիտեն թշնամի թե բարեկամ:
Դու մեկն էիր քաջերից այն անձնվեր,
Որ ոսոխի դեմ նետվեցին անվեհեր:

Հեզ ու բարի մանուկ էիր թխահեր,
Խղճում էիր ծաղկին, ծտին, աղավնուն:
Եկավ ահա ժամանակը, երբ պետք էր
Անգթորեն խփել, ջարդել թշնամուն:

Ու Թամանյան դյուցազնների հետ մեկտեղ
Մաքառելով մինչև Բեռլին դու հասար
Եվ անունդ Ռայխստագի պատին սև
Փորագրեցիր դու սվինով քո սուրսայր:

Եվ գլխարկդ հանեցիր ու արծվային
Սուր հայացքը քո հառեցիր դու հեռուն,
— Խաղաղությո՛ւն թող լինի միշտ,— ասացիր,
Հողագնդում և իմ հայոց աշխարհում...

*Փոխադր. ՍՈՂՈՄՈՆ ՄԿՐՏՉՅԱՆԻ*

Դրսում ձյուն էր գալիս. փաթիլներն իջնում էին ցրտից սրթսրթացող ծառերի ճյուղերին: Ներսում երեխաներն իրար էին անցել: Վաղը՝ Նոր տարվա նախօրեին, վեցերորդ դասարանում հանդես էր լինելու, իսկ տոնածառ դեռ չունեին:

— Ոչի՞նչ, առանց եղևնու էլ ուրախ կլինի,— ասում է Մարինեն:

— Կլինի՞, կլինի՞,— կապկում է լուսամուտի մոտ կանգնած տղան,— առանց տոնածառի ի՞նչ հանդես: Հյուրերի առաջ ամոթով կմնանք:

Նրանք հրավիրել էին հարևան դպրոցի 6-րդ դասարանցիներին: Նրանք միասին հաճախ էին ուրախ հանդիպումներ, ցերեկույթներ կազմակերպում: Մի քանի օր առաջ Ծիծեռնակաբերդի անտառակում ռազմամարզական խաղ էին կազմակերպել: Փայտե հրացաններով զինված, ձյունակոլոլ «հակառակորդները» գրոհեցին միմյանց դիրքերի վրա: Քիչ անց հաղթանակի դրոշը փողփողաց բարձունքին:

— Հաշտությունը կկնքենք մեր դպրոցում, Նոր տարվա հանդեսի ժամանակ,— առաջարկեց Մարինեն:

Հակառակորդները «զենքերը» մի կողմ դրած, բոլորել էին խարույկի շուրջը:

Իսկ հիմա, խնդրեմ, տոնածառ չունեն: Դասարանը զարդարել էին գույնզգույն թղթերով, խաղալիքներով: Դիմակներ էլ ունեին. Սուրիկն «աղվես» էր դարձել,

# ՔԱՆԴԱԿՆԵՐ

*ՄԻՔ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ*

Կանգնի՛ր հապա այս բարձունքին
Ու ժայռերին նայիր մի պահ.
Ասես նրանք մեր քաջարի
Զինվորներն են սահմանապահ:
Քանդակագործ քամին այնպես
Լավ է հղկել ժայռը վայրի,
Որ նայում ես, թվում է քեզ,
Ուր որ է, նա պիտի քայլի:
Իսկ այս ձորի կատարին,
Գառնուկները իր շուրջն առած,
Քարացել է գետի ափին,
Աչքը ճամփին մի գառնարած:

# ԻՆՉՈ՞Ւ ԷՐ ԼԱՑ ԼԻՆՈՒՄ ՁՅՈՒՆԱՆՈՒՇԻԿԸ

ԼՅՈՒԴՎԻԳ ԿԱՐԱՊԵՏՅԱՆ

Հայկը՝ «արջ», Սուսանը՝ «դեղձանիկ»: Իսկ ջոկատի խորհրդի նախագահ Անահիտը դիմակի տակ ոնց որ իսկական նապաստակ լիներ: Հանկարծ նա դիմակը հանեց և տխուր աչքերը հառեց ընկերներին.

— Ի՞նչ արած, ստիպված ենք...

Դեռ նա խոսքը չէր ավարտել, Ռուբիկն առաջ եկավ.

— Սիրելի՛ նապաստակ, ես գտա:

— Ի՞նչ գտար, սուտլի՛կ,— վրա տվին ընկերները:

— Տո-նա-ծա՛ռ,— հանդիսավորությամբ հայտարարեց Ռուբիկը, և վճռական քայլեց դեպի լուսամուտը: Մի պահ նայեց օդում օրորվող փաթիլներին, հետո շուռ եկավ.

— Տոնածառն առավոտյան ժամը 9-ին դասարանում կլինի...

Երբ առավոտյան վեցերորդցիները դպրոց մտան, պահակ քեռին ասաց.

— Շտապե՛ք, շտապե՛ք, Ձմեռ պապին ձեզ եղևնի է ուղարկել:

Երեխաները վազեցին դասարան և ի՞նչ տեսնեն. կենտրոնում, լույսերի մեջ շողշողում էր տոնածառը:

— Ուռա՜,— հրճվանքով կանչեցին բոլորը:

Նույն պահին ներս մտավ Ռուբիկը:

— Շը-նոր-հա-կա-լու-թյո՜ւն,— վանկարկեցին երեխաները և ծափահարեցին:

Երբ վեցերորդցիներն արդեն պատրաստվում էին ներքև իջնել՝ հյուրերին դիմավորելու, միջանցքում հանկարծ աղմուկ բարձրացավ:

Դուռը բացվեց և սենյակ մտան... հյուրերը: Ձյունանուշիկի զգեստով աղջիկը մոտեցավ եղևնուն, ուշադիր զննեց ճյուղերը և գլխիկոր կանգնեց.

— Որ ասում էի՜...

Եվ լաց եղավ:

— Ի՞նչ պատահեց,— իրար անցան տանտերերը:

— Այս եղևնին կտրել եք մեր դպրոցի զոհված սաներին նվիրված պուրակից,— լացակումած ասաց հյուրերից մեկը,— հետքերով եկանք ... և իսկապես...

Բոլորի հայացքները փնտրեցին Ռուբիկին: Բայց նա արդեն դասարանից ծլկել էր: Իսկ Ձյունանուշիկը դեռ հոնգուր-հոնգուր լալիս էր.

— Պապիկիս հիշատակին էի տնկել...

ԽՄԲԱԳՐՈՒԹՅԱՆ ԿՈՂՄԻՑ.— Ջոկատի պիոներների խնդրանքով դպրոցի անունը չենք գրում: Ի՞նչ եք կարծում, ինչպե՞ս վարվեցին ընկերները Ռուբիկի հետ, ի՞նչ տեղի ունեցավ հետո: Հոդվածը քննարկե՛ք ջոկատներում, գրեցե՛ք ձեր կարծիքը:



Սա արծիվ է, չե՞ք ճանաչում՝
Թռչունների հկոր արքան,
Բաց են թևերն ու չի թռչում,
Պատվանդանը ծանր է այնքան...
Մի տեղ սարը Արծվաքար է,
Գառնաքար է կամ Ուղտաքար.
Մայր բնության մեծ քանքարն է
Հուշարձաններ կերտել այդքան:

Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ

# ԽԱԺՈՅԵՆՑ ԽԱՉՈՆ

*ՆԱԻՐԻ ԶԱՐՅԱՆ*

**«Երկրորդ կյանք» գրքից**

Հորաքույր Ալմոն ինձ համար հոտաղության տեղ էր գտել Արչակում: Նրա կարծիքով, ես արդեն դարձել էի մեծահասակ ու նշանավոր տղա և ինձ համար անհարմար էր հոտաղություն անել Խառակոնիսում: Ավելի լավ էր գնայի Արչակ, չար աչքերից ու չար լեզուներից հեռու: Ինչպես ինքն էր մեր ընտանիքի ապրուստը լրացնելու համար ծառայում արչակցիներին: Բացի դրանից, հորաքույր Ալմոյի կարծիքով, արչակցիք ավելի խղճով մարդիկ էին, ինձ ավելի քիչ կչարչարեին և ավելի լավ կվարձատրեին: Իհարկե հորաքույր Ալմոյի խաթրին:

Եվ մայիսի սկզբին հորաքույր Ալմոն իմ ձեռքից բռնած տարավ Արչակ:

Արչակը Խառակոնիսից, իհարկե, լավ էր մի քանի կողմերով: Այնտեղ էր նստում մուդուրը (գավառակապետը), և մեր գյուղացիներին այնտեղ էին տանում տուգանելու կամ բանտարկելու համար: Մեր գյուղում ծառ չկար, իսկ Արչակի փողոցներում էլ, բակերում էլ ծառ կար: Արչակի դոլմենները մեր գյուղի դոլմեններից ավելի շատ էին և ավելի մեծ: Արչակցիք վանեցիների պես թանապուրին սպաս էին ասում, թանին՝ գյորոմաստ: Արչակի սարում էր գտնվում «Սուրբ Աստվածածին» վանքը և շրջակա գյուղերն ամեն տարի այնտեղ էին ուխտ գնում: Ծովն Արչակից բավականին հեռու էր և չէր սպառնում գյուղն առնել ջրի տակ: Արչակը Վանին ավելի մոտիկ էր, մենք Վան գնալու համար Արչակով պիտի անցնեինք: Արչակը Խառակոնիսից լավ էր, իհարկե, շատ կողմերով:

Ես հոտաղ դարձա արչակցի Խաժոյենց Խաչոյի տանը: Խաժոյենք մեծ ու հարուստ գերդաստան էին, որոնց մեջ իր խելքով ու պատվասիրությամբ աչքի էր ընկնում Խաչոն, սև սրածայր բեղերով, սև խոշոր աչքերով, բարձրահասակ ու թիկնեղ մի արչակցի:

Նա ուներ Նեկտար անունով սիրուն ու ջահել մի կին և ավելի սիրուն մի աղջիկ, որ ինձ հասակակից էր, անունն էլ՝ Արուս:

Առատ ու համեղ ակռատից հետո Խաժոյի Խաչոն ասաց.

— Ալմա՛ստ քույրիկ, դու հանգի՛ստ գնա Խառակոնիս: Քո Հայաստանին ես կպահեմ ինչպես իմ հարազատ որդուն ու մարդ կդարձնեմ:

Հորաքույր Ալմաստը երեսս պաչեց, չար աչքերից հեռու պահելու համար վրաս թքեց ու տուն գնաց:

Արչակցիք ինձ հետ սկզբում վարվում էին ինչպես իրենց հարազատ որդու հետ: Նեկտար խանումն իմ մախաղի մեջ դնում էր ամենահամեղ ուտելիքները և պատվիրում էր, որ տավարի հոգսով չընկնեմ, ուտելը մոռանամ: Առաջին իսկ օրը հորաքույր Ալմաստից իմացավ, որ ես կաթի մեր շատ եմ սիրում և ամեն առավոտ ինձ կաթի սեր էր ուտեցնում:

Արուսն ամեն երեկո իմ գուլպաները լվանում էր ու չորացնում առավոտյան ինձ հագցնելու համար: Կարծես ես նրա ոչ թե հոտաղն էի, այլ՝ եղբայրը:

Ինքը Խաչո-աղան առաջին օրը անձամբ ինձ հետ եկավ հանդ և ցույց տվեց բոլոր լավ արոտատեղերը, աղբյուրները, առուները, որտեղ ես տավարը պետք է ջրեի և հանգստացնեի:

— Տավարը հանդ կամ տուն քշելիս թե որ կհոգնես,— ասաց նա հայրական հոգատարությամբ,— նստիր գոմե՛շը: Նա շատ խելոք է ու կակուղ մեջք ունի:

Առաջին օրերը Խաժոյենց Խաչոյի տանը ես ոչ թե հոտաղ էի, այլ՝ տղա: Ես անդադար զարմանում էի, թե աշխարհում ոնց կարող են պատահել այսքան բարի, մարդասեր մարդիկ:

Բայց Խաչոն հետզհետե փոխեց իր վերաբերմունքը: Նա սկսեց ինձ հեգնել և մինչև անգամ հայհոյել: Երևի մեղավորը ես էի:

Իմ պակասությունները երևացին գութան անելիս: Ես մի քանի անգամ ոտան լծից վայր գլորվեցի և գլուխս քարին դիպավ ու պատռվեց: Խաչոն փոխանակ ինձ կարեկցելու, ամեն անգամ ասում էր.

— Սա ի՞նչ անճարակ փալասի մեկն է, ծո՛... Բա ինչո՞ւ մածնաբրթոշ լափելիս գդալը ձեռքիցդ վար չես գցում...

Լծից վայր ընկնելը դարձավ ինձ համար մշտական մղձավանջ: Ես չէի կարողանում ոտներս հասցնել եզան անութին, որ ակռկեի նրանից և ինձ պահեի լծան վրա, մանավանդ արտի ծայրերին, երբ գութանը պետք է շրջան կատարեր մյուս ակոսը մտնելու համար: Ես ոտքով քշելու համար դեռ անչափահաս էի: Ոտքով քշում էին տասնհինգից-քսան տարեկան տղաները: Իսկ ես ընդամենը դեռ տասը տարեկան էի: Ես լծից վայր էի գլորվում նաև գիշերը քնի մեջ և սարսափած վեր էի ցատկում:

Չնայած Խաժոյի Խաչոն օրական տասն անգամ ինձ ասում էր, որ մարդ չեմ դառնա, ես հաստատ որոշել էի անպայման մարդ դառնալ և այդ կերպ նրանից վրեժ լուծել: Մեր ուսուցիչ պարոն Արամը ինձ ֆրանսերենի տառերը սովորեցրել էր, ֆրանսերենի դասագիրք և խորհուրդ էր տվել անպայման սովորել այդ լեզուն, որովհետև ուսումնական մարդը պետք է անպայման ֆրանսերեն իմանա: Իսկ ես

որոշել էի դառնալ ուսումնական մարդ: Ես իմ ֆրանսերեն դասագիրքը պահում էի մախաղիս մեջ և դաշտում, տավար արածացնելիս, որևէ թփի ստվերում նստած՝ հեգելով կարդում էի ինձ անծանոթ, անհասկանալի բառերը և թողնում, որ տավարն ընկնի կուլուռուկ: Այդպիսի դեպքերում հանդերի պահապանը ոչ միայն ինձ անխնա ծեծում էր, այլև գանգատվում էր իմ աղային:

Իմ իսկական պատիժը տալիս էր Խաժոյի Խաչոն: Նա իր կնոջ և աղջկա ներկայությամբ նախատում էր ինձ, հայտնագործում և ծաղրում էր իմ ֆիզիկական պակասությունները.

— Էս լակոտի մեկ աչքը մեծ է, մյուսը՝ փոքր...

— Էս քուռակի մեկ հոնքը բարձր է, մյուսը՝ ցածր...

— Էս քոսոտի մեջքը երկար է, ոտքերը՝ կարճ...

Նեկտար խանումն ու Արուսը ծպտուն չէին հանում: Միայն թաքուն համակրանքով հասկացնում էին, որ չընկճվեմ, որ դիմանամ այդ ծաղր ու ծանակին մինչև... մինչև ե՞րբ:

Խաժոյի Խաչոն վզում էր իմ և իր աղջկա փոխադարձ համակրանքը և աշխատում էր ինձ նվաստացնել ու ոչնչացնել հատկապես Արուսի աչքում:

— Մեկ հարցնող լինի, էս բոճն ինչո՞ւ է ապրում աշխարհի վրա, ինչ է հասկանում աշխարհից, աշխա՞րհն ինչ է հասկանում սրանից:

Նեկտար խանումը ամուսնուց գաղտնի շարունակում էր ինձ համակրանք ցույց տալ և կաթի սեր ուտեցնել: Արուսը շարունակում էր իմ գուլպաները լվանալ: Բայց այդ ամենը չէր մխիթարում ինձ: Խաչոյի նախատինքներից ես գնալով ավելի շատ էի շփոթվում, ավելի հաճախ էի լծից ընկնում, ավելի վնասակար սխալներ էի կատարում: Իսկ նա գտնում էր ինձ հայհոյելու և նվաստացնելու նոր ձևեր:

Խաժոյի Խաչոյի չարագուշակության հակառակ, մարդ դառնալու ձգտումը ինձ հասցրեց մի սոսկալի հարված: Այդ օրը գութան չկար: Առավոտ վաղ ես տավարը քշեցի «Սուրբ Աստվածածին» սարի ստորոտները: Առվի սիգառատ ափին տավարն արածում էր, իսկ ես ժայռի ստվերում նստած ֆրանսերեն էի սերտում: Հանկարծ նկատեցի, որ սև եզը՝ գոմշի չափ ուժեղ ու գեղեցիկ Խայալը մտել է կանաչ առվույտը: Ես գիտեի, որ տակավին չծաղկած կանաչ առվույտը մահացու է որոճացող անասունների համար: Սարսափահար վազեցի և եզանը դուրս արի առվույտից: Բայց արդեն ուշ էր: Եզն սկսեց ուռչել: Ես տավարը քշեցի դեպի տուն, սկսեցի եզան պոչը բռնած՝ նրան վազեցնել: Չօգնեց: Դոլմեների մոտ եզը լեզուն դուրս հանեց և պառկեց գետին...

Կարծես մի ծանր երազի մեջ հավաքվեցին մարդիկ և եզը մորթեցին: Խաչոն խարազանով ծեծում էր ինձ և հայհոյում բոլոր սրբություններս: Ոչ ոք չէր



Նկ. ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

փորձում ինձ նրա ձեռքից առնել: Բոլորն էլ ինձ համացավոր էին համարում և իմ կերած պատիժը՝ տեղին:

Ես էլ էի այդպես մտածում: Ախար սև եզը Խաչոյի պարծանքն էր: Ես էլ էի սիրում կեռ սրածայր կոտոշներով, պարանոցը շարունակ բարձր պահող այդ գեղեցիկ ու հպարտ եզանը: Ես ինձ զգում էի իր հարազատ եղբորն սպանած մարդու վիճակում: Ինձ մինչև անգամ թվում էր, թե Խաչոն ինձ իմ գործած հանցանքի դիմաց ավելի քիչ պատժեց: Կարծես ջրհորի միջից՝ ես լսեցի նրա ձայնը.

— Գնա կորի՛ր, քո՛ռ բլոճ, էլ աչքիս չերևա՛ս:

Ես քաշվեցի դոլմենների խորքը և բերանքսիվայր պառկեցի քարի տակ: Որոշել էի մեր տուն այլևս չվերադառնալ, սար ու ձոր ընկնել, կորչել. ինչպե՞ս պիտի երևայի հորս աչքին: Նա եթե մեր ամբողջ տուն ու տեղը ծախեր, Խաչոյի սև եզան գինը չէր հանի...

Աշխարհն իմ գլխին փուլ էր եկել, և ես ինքս ինձ հարց էի տալիս, թե սեզի վրա կուչուձիգ անող թըրթուրը ինչ է հասկանում աշխարհից... Երանի՜ քեզ, թրթո՛ւր, դու ո՛չ հոտաղ ես եղել, ո՛չ էլ եզ ես զգել առվույտն ու սատկացրել:

Ես շրջվեցի կողքիս և սկսեցի նայել շուրջս: Աշխարհի հետ բան չէր պատահել: Դոլմենները, նրանց արանքներում բուսած բարձրացողուն տուղտերը, մուդուրի տան մոտից երևացող բարդիները — բոլորը կանգնած էին իրենց տեղում առաջվա պես անմեղ և ինքնավստահ: Միայն ես էի հանցավոր և աշխարհից մերժված:

Արևմտոցի ժամանակ դոլմենների մեջ ինձ գտավ Խաչոն և ասաց.

— Գնանք տուն:

Ես լուռ ու մունջ հետևեցի նրան: Տանն ընթրիքի սուփրան բաց արել, մեզ էին սպասում: Ինձ հրամայեցին սուփրա նստել և հաց ուտել: Ես կանգնած մնացի սյան տակ: Խաչոն կատաղեց.

— Ի՞նչ ես բահի կոթի պես տնկվել սյան տակ: Նստի՛ր, հա՛ց կխթվիր: Ոնց որ մի բան էլ ես եմ քեզ պարտք մնացել, քո՛ռ բլոճ:

— Խաչո՛ աղա,— ասացի ես լացս հազիվ զսպելով,— ես քեզ մեծ վնաս եմ տվել: Տփի՛ր ինձ, կուզես՝ խարազանով, կուզես՝ կոպալով: Տփի՛ր ու սպանի՛ր, միայն անպատիվ խոսքեր մի՛ ասա:

— Յա՜հ,—բացականչեց Խաչոն ինչպես մի մարդ, որ դաշույնի հարված է ստացել մեջքին:

— Հա՛,— շարունակեցի ես իմ կերած վիրավորանքների ամբողջ ուժով,—իմ հերը որ մեր տուն ու տեղը ծախի, քո սև եզան գինը չի դուրս գա: Էս բանից հետո ես էլ չեմ գնա Խառակոնիս: Ի՞նչ երեսով կանգնեմ հորս առաջ: Ասա՛, քանի՞ տարի քեզ ձրի հոտաղություն անեմ, որ դուրս գամ պարտքիս տակից: Ասա՛, տփի՛ր ինձ, բանեցրո՛ւ, միայն մի՛ անպատվի: Ես քո հոտաղն եմ, բայց իմ հոր տղան:

— Յա՜հ,— զարմանքով ու կատաղությամբ ասաց Խաչոն:— Էս բլոճի խոսքերը մի պուտուկ մեղրով չեն ուտվի:

Նեկտար խանումը գլուխը կախեց և գլխաշորի ծայրը տարավ աչքերին: Արուսը վեր կացավ ու հեկեկալով դուրս վազեց: Խաչոն նույնպես փնչալով տեղից վեր կացավ ու գնաց իր աղջկա ետևից: Ես չգիտեի ինչ անեմ, կանգնա՞ծ մնամ սյան տակ, դո՞ւրս գնամ, թե՞ Նեկտար խանումի հորդորանքին տեղի տալով՝ նստեմ հաց ուտեմ:

Առավոտվանից բան չէի դրել բերանս:

Այդ օրվանից Խաժոյի Խաչոն փոխվեց: Նա չդարձավ իմ հանդեպ առաջին օրերի պես բարի և հոգատար, բայց այլևս ոչ մի խոսքով չէր նախատում ու չէր վիրավորում ինձ: Կարծես մի տեսակ խռովել էր ինձանից:

Ես էլ էի փոխվել: Այլևս ոչ մի անգամ լծից վայր չգլորվեցի: Դարձել էի շատ ուշադիր ու ջանասեր: Միայն իմ սիրտը որդի պես կրծում էր մի հարց. ի՞նչ պիտի անի իմ խեղճ հայրը, եթե Խաժոյի Խաչոն իմ վարձից կտրի մի օրավար գութանը, որով նա պիտի մեր գյուղում հողակտորը հերկեր: Եթե հողը մայիսին չհերկվեր, ուրեմն աշնանը ցանել չէր լինի, մենք պիտի զրկվեինք այդ հողից ստացվող երկու-երեք պարկ ցորենից, այսինքն մեր տարեկան ապրուստի հիմնական մասից: Խաժոյի Խաչոն իրավունք ուներ զրկել ինձ այդ օրավար գութանից, քանի որ ես նրան մեծ վնաս էի տվել, բայց ի՞նչ պիտի աներ իմ խեղճ հայրը: Այս հարցը որդի պես կրծում էր իմ սիրտը:

Մայիսի վերջերին, գութանները թողնելուց մի շաբաթ առաջ, Խաչոն ընթրիքի վրա ինձ ասաց.

— Է՛, Հայաստա՛ն, տղա՛, վաղը մթնաղուսին գնում ենք Խառակոնիս ձեր հողը հերկելու: Ի՞նչ կասես:

— Ի՞նչ ասեմ, Խաչո՛ աղա,— փղձկացի ես:— Աստված քո մեկ եզան տեղ հազա՛րը տա:

— Եզը մոռանանք,— ասաց Խաչոն առաջին օրերի ուրախ ժպիտով:— Փորձանք էր, պատահեց: Աստված տա, էլ չպատահի:

Նեկտար խանումն ու Արուսը արցունքից շողացող աչքերով նայեցին ինձ: Արուսը գլուխը թաղեց հոր գրկի մեջ ու հեկեկաց:





## ՍՊԱՍԻՐ ԳԱՐՆԱՆԸ

ՄԿՐՏԻՉ ՍԱՐԳՍՅԱՆ

Դաշտում դեռ ձյուն է,
Խստաշունչ ձմեռ:
Ցուրտը կծում է
Շնիկի պես մեր:

Իսկ դո՛ւ, Կարինե՛,
Ծաղիկ ես ուզում:
Ի՞նչ է, գարո՛ւն ես
Տեսել երազում:

Չէ՛, դեռ սպասի՛ր,
Սպասի՛ր մի քիչ,
Դաշտը գորգ դառնա,
Գետակը՝ երգիչ:

Սպասիր այնքա՛ն,
Որ ձյունը հալվի,
Եվ ձնծաղիկը
Գլխիկը հանի:

# ԱԶՆՎՈՒԹՅՈՒՆ

ՌՈԲԵՐՏ ԲԱԲԼՈՅԱՆ

Ես երազում էի տան տղամարդ լինել, ինչպես Էդիկի հայրիկն էր: Պատերազմի տարիներն էին, հայրիկը տանը չէր, իսկ ես տասը տարեկան էլ չկայի: Ու շատ էի ուզում օգնել մայրիկին:

Բայց ինչպե՞ս...

Դպրոցի ճամփին Էդիկի գրպանում տեսա մի ինքնահոս, որը ոսկու պես փայլում էր:

— Էդի՛կ, որտեղի՞ց քեզ այդ ինքնահոսը,— հարցրի ես:

— Գնել եմ:

— Ի՞նքդ:

— Հա՛, ինքս:

— Քեզ որտեղի՞ց փող: Փչում ես:

— Չեմ փչում:

— Բա ինչպե՞ս:

— ...

Խանութի դռանը ամեն օր կեսօրից հետո լուցկու մեծ հերթ էր լինում: Պատերազմի օրերին լուցկի դժվար էր ճարվում:

Ես էլ հերթ կանգնեցի: Եվ այն ժամանակվա հիսուն կոպեկով կարկանդակի փոխարեն գնեցի մի տուփ լուցկի, որի վրա գրված էր «Գիգանտ»: Այդ լուցկին վաճառեցի մեկ ռուբլով ու նորից հերթ կանգնեցի: Կանգնեցի մի ամբողջ ժամ, մի հատ էլ գնեցի: Այդ լուցկին էլ վաճառեցի ու նորից հերթ կանգնեցի: Եվ մինչև իրիկուն այդպես գնեցի ու վաճառեցի:

Երբ մայրիկս աշխատանքից տուն եկավ, սեղանին դրված էր եգիպտացորենի սպիտակ մի հաց: Ու մենք երեքով՝ մեկս մեկից փոքր, շարվեցինք սեղանի շուրջը:

«Դե,— մտածեցի ես,— հիմա ինձնից թող շնորհակալ լինեն: Ահա սեփական աշխատանքով տուն բերեցի մի բոքոն. դա իմ առաջին օգնությունն է ընտանիքին: Ես հո Էդիկի նման չեմ, որ ամբողջ օրը չարչարվեմ ու աշխատածս փողով ինձ համար ինքնահոս գնեմ: Ես այնպիսին եմ, ինչպիսին Էդիկի հայրիկն է. տնից մի չոփ տար, փոխարենը մի գերան բեր: Ա՛յ, հիսուն կոպեկ տարա ու մի բոքոն բերեցի: Հիմա ես միշտ կարող եմ օգնել...»

— Այս հացը որտեղի՞ց,— հարցրեց մայրիկս:

— Ե՛ս... ե՛ս եմ գնել այսօր,— ուրախ պատասխանեցի ես:

— Ո՞ւմ փողով:

— Ի՛մ փողով, մայրի՛կ ջան:

— Իսկ քեզ որտեղի՞ց փող...

Ես չկարողացա ճշմարտությունն ասել: Լռեցի: Մեր տանը կար չգրված օրենք. եթե լռում ես, ուրեմն՝ խաբում ես: Լռեցի, բայց ոչ երկար: «Լուցկի եմ վաճառել»,— խոստովանեցի ես:

Հացը ոչ ոք չկերավ:

Ես լացակումեցի.

— Ի՞նչ եք ուզում ասել դրանով... ես ամբողջ օրը չարչարվել եմ, դպրոցից ետ եմ ընկել, ման գալու չեմ գնացել, ֆուտբոլ չեմ խաղացել, հաց եմ աշխատել, իսկ դուք չեք ուզում իմ բերած հացն ուտել: Դե, ի՞նչ է նշանակում դա, ի՞նչ, ի՞նչ...

— Ազնվություն,— պատասխանեց մայրիկս ու գնաց խոհանոց:



# ՀԱՎԱՔԱԾՈՒԻ ՎԵՐՋԻՆ ՆՄՈՒՇԸ

ԳՐԻԳՈՐ ՋԱՆԻԿՅԱՆ

Նկ. ՎԱՂԱՐՇԱԿ ԱՐԱՄՅԱՆԻ

Նորից նրանք վիճում են: Նորից այնպիսի բաների մասին, որ անհնար է հասկանալ: Որպեսզի իրենց խոսակցությունն ինձ չհասնի, հայրիկը միշտ նախօրոք միացնում է ձայնամեկուսիչը: Նա գտնում է, որ պապիկի մտքերը ինձ համար կարող են վնասակար լինել, որովհետև պապիկը իմ պապիկը չէ, այլ իմ պապիկի, պապիկի պապիկը: Բացի այդ, նա ծնվել է բոլորովին այլ մոլորակում, որի անունը Երկիր է: Պապիկը, ընդհակառակը, պնդում է, որ երեք-չորս հարյուր տարին մարդկային կյանքի համար չնչին ժամկետ է ու մենք բոլորս էլ երկրացի ենք: Հայրիկս ասում է, որ՝ չենք:

Այդ վեճից ես միայն կարողանում եմ հասկանալ, որ նրանք մոռացել են երկու շատ կարևոր բան՝ իրենց տարիքն ու ծննդավայրը: Եթե հիմա էլ դուք մտնեք մեր արծաթե տունը, պատին երկու օրացույց կտեսնեք: Օրացույցներից մեկով երկու հազար յոթհարյուր թվականն է, մյուսով ընդամենը՝ քսանութ թիվը: Ինձ համար պարզ չէ նաև, մենք ուրիշ տեղի՞ց ենք եկել, թե՞ սա մեր տունն է: Հայրիկն ասում է, որ սա մեր տունն է ու մենք պարտավոր ենք սիրել այն: Պապիկն ասում է, որ այս երկաթե աշխարհում սիրելու ոչ մի բան չկա: Երբ նրանք վիճում են այնքան, որ երկուսն էլ տաքացած ռոբոտի նման կաս-կարմիր են դառնում, պապիկը խնդրում է.

— Լռի՛ր, ես չեմ ուզում, որ երեխան այդ բաները լսի:

— Նա երեխա չէ՛,— գոռում է հայրիկը:— Երեխան չի կարող այլ համաստեղություններ ու քաղաքակրթություններ որոնել:

— Նրա հասակակիցները Երկրում մանկապարտեզ են գնում,— տեղից վեր է ցատկում պապիկը,— դու երեխային ռոբոտ ես դարձրել:

— Արմե՛ն,— հուսահատված ինձ է շրջվում հայրիկը,— խո՛սք հասկացրու այս մարդուն:

Ես չգիտեմ, թե ի՞նչ է նշանակում «խոսք հասկացնել»: Ես չգիտեմ, թե ինչու է պապիկը դժգոհ, որ հայրիկը ինձ ուզում է ռոբոտ դարձնել: Ես միշտ էլ նախանձել եմ ռոբոտներին: Օրվա մեջ մի ակընթարթ է պետք, որպեսզի նրանց սնուցիչները փոխես և նրանք շարունակեն աշխատել առաջվա եռանդով: Իսկ մենք, որպեսզի մեր ուժերը վերականգնենք, ստիպված ենք ութ ժամ քնել: Դա ինձ միշտ էլ ժամանակի ավելորդ կորուստ է թվացել, որովհետև հաշվել եմ, թե քանի մոլորակ կարող էի այցելել, եթե քնելու վրա ծախսվող ժամանակը չլիներ: Մի՛ զարմացեք, մեր շուրջը եղած մոլորակ-

ները այնքան հետաքրքիր են, որ անհնար է նրանցից մեկնումեկը բաց թողնել: Դրա համար, ամեն առավոտ, հենց որ զարթնում եմ քնից, հագնում եմ սկաֆանդրս ու ճառագայթներով սլանում եմ հայրիկի մոտ՝ դիտարան: Ճիշտ է, նա զբաղված է ինչ-որ շատ բարդ աշխատանքով, բայց ինձ թույլ է տալիս օգտվել իր հեռադիտակներից: Միայն թե իրեն չխանգարեմ: Ես նստում եմ հեռադիտակների առջև ու նայում եմ կապույտ ամպերով լցված երկնքին, որտեղ ցոլցլում են միլիոնավոր աստղեր: Ճիշտ եմ ասում, աստղազարդ երկինքը ավելի հետաքրքիր է, քան ամենահետաքրքիր հեռուստացուցային հեքիաթը: Ես հայացքով դանդաղ զբոսնում եմ կանաչ, կապույտ, մանուշակագույն աստղերի միջով և ընտրում եմ այն աստղը, որն ինձ ավելի է դուր գալիս: Հետո վերցնում եմ միտեղանոց տիեզերանավն ու սլանում եմ դեպի այդ աստղը: Չկարծեք, որ նա մոտիկից նույն գույնն ունի, ինչ որ հեռվից: Հեռադիտակով աստղը կանաչ է երևում, բայց երբ տեղ ես հասնում, պարզվում է, որ նրա փողոցները դեղին են, իսկ երկնաքերները՝ կապույտ:

Հայրիկն ասում է, որ դա կախված է արհեստական արևի դիրքից: Ես ամեն օր զբոսնում եմ անծանոթ մոլորակների փողոցներով ու ինձ համար շատ հետաքրքիր բաներ եմ հավաքում: Այնպես, ինչպես մեր թաղի մյուս տղաները, հավաքում են դրոշմանիշ, ռոբոտ, անհետացած թիթեռների տեսակներ: Իմ կարծիքով, ես սովորական կոլեկցիոներ եմ, բայց հայրիկն ասում է, որ լուրջ գիտական աշխատանք եմ կատարում և եթե Երկրում լինեի, հիմա ինձ գիտությունների դոկտոր-պրոֆեսորի կոչում էին տվել:

Հարևան սենյակում աղմուկը շատացավ: Նշանակում է, պապիկի ու հայրիկի վեճն ավարտվեց ու նրանք անջատեցին ձայնամեկուսիչը:

Ես լսեցի, թե ինչպես հայրիկը հագավ սկաֆանդրն ու շրխկոցով դուռը փակեց: Մի պահ ուզեցի դուրս գալ նրա ետևից, բայց դուռը բացվեց ու ներս մտավ պապիկը: Նրա ձեռքերը դողում էին և աչքերից սնդիկանձև հեղուկ էր հոսում:

— Այդ ի՞նչ է աչքերիդ, պա՛պ,— վախեցա ես:

— Արցունք,— ձեռքով դեմքը ծածկեց պապիկը,— ես լաց եմ լինում:

— Լաց լինելն ի՞նչ է,— ծիծաղեցի ես:

— Լաց լինելու վրա չի կարելի ծիծաղել,— սաստեց պապիկը,— լացը տխրության նշան է:

Ես գիտեի, թե տխրությունն ինչ է, բայց կյանքումս տխուր մարդ չէի տեսել:

— Մենք քիչ առաջ հայրիկի հետ լուրջ խոսակցություն ունեցանք,— բազկաթոռի մեջ տեղավորվելով ասաց պապիկը,— մենք իրարից բաժանվում ենք:

— Ընդմի՞շտ:

— Ընդմի՛շտ:

Ես նայեցի պապիկի դեմքին և զգացի, որ նա շատ անօգնական ու խղճալի տեսք ունի: Իհարկե, ինձ համար պարզ չէր, թե ինչու է այդ այդպես: Պապիկը ամբողջ օրը իր համար սան էր գալիս և չի կարելի ասել, որ առանձնապես բարդ աշխատանք էր կատարում: Ավելի ճիշտ, նա ոչ մի աշխատանք էլ չէր կատարում: Միայն վիճում էր հայրիկի հետ:

— Իսկ կարելի՞ է իմանալ, թե որ մոլորակն ես ուզում գնալ:

— Հենց դա է բանը,— հառաչեց պապիկը,—ես հայրենիք եմ գնում:

— Իսկ դա հետաքրքի՞ր մոլորակ է:

Նա թախիծով նայեց դեմքիս ու անսպասելիորեն տեղից վեր կացավ:

— Արի՛,— ձեռքս ամուր բռնեց նա:

Մենք մտանք պապիկի առանձնասենյակը, իսկ հետո՝ գաղտնի մուտքով ձեղնահարկ: Այնտեղ մի ընդարձակ, ուռուցիկ սրահ կար, որտեղ ստվարաթղթից փողոցներ, տներ ու լճեր էին շինված: Պապիկը հանեց կոշիկները, ու մենք ստվարաթղթե փողոցով ցած իջանք: Նա կարծես մոռացել էր իր տարիքը ու երեխայի պես թռչկոտում էր: Ես երբեք նրան այդքան երջանիկ ու գոհ չէի տեսել: Չի կարելի ասել, որ պապիկի հայտնագործած մոլորակը մի առանձնահատուկ հրաշալիք էր: Դրա համար ես զարմանում էի, որ նա այսպիսի հիացմունքով կանգ է առնում ամեն փողոցի, ծառի, թփի առաջ ու խոր-րը, շատ խորը շնչում սարերից եկող արծաթագույն օդը: Ես սրանից հազար անգամ ավելի լավ մոլորակներ էի տեսել, բայց մտքովս էլ չէր անցել ուրախանալ դրա համար:

Ի վերջո մենք կանգ առանք քարից ու հողից շինված մի հին տան առջև:

— Սա մեր տունն է,— դողդողացող ձայնով ասաց պապիկը:

— Ինչպե՞ս թե,— ծիծաղեցի ես,— մեր տունը մետաղից է: Տասը հազար տարի է ոչ մեկն այլևս քարից տուն չի պատրաստում:

— Սա մեր տունն է,— կրկնեց պապիկը,— մի՛ ծիծաղի քո նախնիների վրա:

Իմ ուսուցիչ ռոբոտը սովորեցրել էր, որ երբեք չի կարելի մարդկանց ծիծաղն արգելել, դրա համար ես հարցրեցի.

— Իսկ ի՞նչ իմաստ ունի իմ չծիծաղելը:

— Հենց այնպես,— խեղճացավ պապիկը,— մի՛ ծիծաղի ու վերջ: Եվ հետո, ինչո՞ւ ես ամեն բանի մեջ իմաստ որոնում, ինչո՞ւ ես...

Պապիկը գլուխը խոնարհեց ցած: Հանկարծ ես ուզեցի նետվել ու ամուր համբուրել նրան, բայց ի-

կույն էլ ետ կանգնեցի այդ մտքից, որովհետև երկուսս էլ... սկաֆանդր էինք հագել:

Առավոտյան ես ու հայրիկը ճանապարհ դրեցինք պապին: Ձնայած բաժանմանը, նա զարմանալիորեն ուրախ ու աշխույժ էր: Տխուր էր միայն հայրիկը:

— Դե լա՛վ, շատ մի՛ տխրի,— հորս ուսին թըփթըփացնում էր պապիկը,— ես քո փոխարեն էլ մաո կգամ: Հենց որ վերադարձա, դու կգնաս փոքրիկի հետ: Երեխայի համար դա շատ կարևոր է:

Հայրիկը ոչինչ չասաց ու տխուր ժպտաց: Քիչ անց, մեր ամենաարագընթաց տիեզերանավը օդ բարձրացավ և նույն ակնթարթում էլ կորավ աստղերի համաստեղությունում: Հայրիկը տեղում քարացած նայում էր տիեզերանավի ետևից ու կարծես ինչ-որ անակնկալի էր սպասում:

— Գնա՛նք,— ի վերջո սթափվեց նա ու, առանց մի խոսք ասելու, տուն մտավ:

Ես մտածում էի, որ հայրիկն անմիջապես աշխատանքի կանցնի, բայց նա լուռ նստել էր բազմոցին ու մտադրություն չուներ տեղից շարժվելու:

— Տղաս,— ի վերջո կամաց ասաց նա,— ես ուզում եմ քեզ մի շատ կարևոր գաղտնիք հայտնել:

Ես գլուխս բարձրացրի ու զարմացած նայեցի հայրիկին:

— Դու պետք է իմանաս,— գլուխը խոնարհեց նա,— որ պապը Երկիր չի հասնի:

— Ինչպե՞ս թե...

— Այստեղից մինչև Երկիր տասնհինգ լուսային տարի է, իսկ խեղճ ծերունին հազիվ մի քանի տարվա կյանք ունի: Նա խառնել էր տարիների հաշիվը:

— Հայրի՛կ,— ցնցվեցի ես,— դու գիտեիր այդ մասին և թույլ տվեցիր, որ նա մեկնի՞:

— Ուրիշ ճար չունեի,— բազմոցի մեջ կծկվեց հայրիկը,— հավատա՛, ուրիշ ճար չունեի: Այստեղ ծերունին երջանիկ չէր: Նա Երկիրն էր ուզում: Նա տանջվում էր այդ կարոտից ու ինձ էլ տանջում էր իր հետ: Իսկ հիմա, գոնե մինչև կյանքի վերջին ակնթարթը, այնքան որքան ապրելու է դեռ, իրեն երջանիկ կզգա, որովհետև հավատացած է, որ Երկիր է վերադառնում, իր ու իր պապերի հողը...

Այդ գիշեր մեր մեծ, շատ մեծ տունը ինձ միանգամից դատարկված թվաց: Ես ու հայրիկը քայլում էինք շփոթված ու չէինք համարձակվում միմյանց աչքերի նայել:

Իսկ առավոտյան, հենց որ լույսը բացվեց, ես ճառագայթ նստեցի ու նորից դիտարան սլացա: Ո՛չ, ես նոր մոլորակ չէի որոնում: Աչքս հսկա հեռադիտակի ապակուն հպած, ես երկար փնտրում էի այն տեղը, որտեղ պապիկի փոխարեն վայրէջք պիտի կատարեի ես, հասկանալի է, ամենևին էլ ոչ նրա համար, որ իմ հավաքածուն հարստացնեմ...





*ազանանոցի մուտքի մոտ, քարե պատվանդանին, պոչը վեր ցցված, գզգզված բաշով, փայլուն աչքերով մի հսկա առյուծ կա կանգնած: Նա այնքան է նման իսկական առյուծի, որ այցելուներից շատերին թվում է, թե ուր որ է ցած կթռչի, ու մի պահ սարսափով անշարժանում են: Հետո, երբ հասկանում են, որ առյուծն իրական չի՝ հանգիստ շունչ են քաշում ու զարմանում քանդակագործի վարպետության վրա. ինչպե՞ս է կարողացել այդքան կենդանի առյուծ քանդակել:*

*— Ո՞վ է այդ մեծ քանդակագործը, որ կարողացել է այսքան սքանչելի առյուծ քանդակել,— հարցնում են բոլորը գազանանոցի մուտքի մոտ կանգնած պահակին:*

*— Դո՛ւք եք,— կարճ ու խիստ պատասխանում է պահակը:*

*— Ինչպե՞ս թե՝ մենք ենք...*

*— Դո՛ւք եք,— մռայլ ասում է պահակը,— մուտքի մոտ մի խմբվեք, գնացե՛ք...*

*Մարդիկ չեն հասկանում, խնդրում են նրան բացատրել, ինչպե՞ս թե իրենք են այդ քանդակագործը, բայց պահակը նրանց չի պատասխանում:*

*Տարիներ առաջ աֆրիկական անապատներից գազանանոց բերեցին դեղնակարմիր, փայլուն մորթով, ահռելի երախով ու օձի նման գալարվող պոչով ամե-*

# ՈՒՌԵՆԻ

ԹԱԹՈՒԼ ԲՈՂՈՐՋՅԱՆ

Ո՛չ քարափներն են ինձ հրապուրում,
Ո՛չ բլուրները,
Ո՛չ դաշտերը:
Գետ ու գետակի ափին եմ աճում,
Իմ սիրած տեղը այստեղ է:
Ալիքներին եմ տալիս վարսերս
Եվ արմատներս՝
Խոր հատակին...
Թող մարդիկ ինձ հետ
Խոսեն,
Կատակեն,
Ինձ հետ մտորեն,
Ինձ հետ երազեն,
Եվ փոխարենը
Թող այնպես անեն,
Որ իմ ջրերը չնվազեն:

հի մի առյուծ։ Որովհետև առյուծը շատ էր ուժեղ՝ մի ամուր վանդակ պատրաստեցին և նրան տեղավորեցին այդ վանդակում։ Շուտով հսկա առյուծի համբավը տարածվեց ողջ քաղաքում, ու բոլորը ցանկացան տեսնել նրան։ Երկար հերթեր գոյացան նրա վանդակի մոտ։ Առյուծը սկզբում չէր կարողանում ընտելանալ վանդակին, հազար աչքով իրեն նայող բազմությանը, մոլեգնում էր, մռնչում, իրեն զարկում պատերին ու ճաղերին, հետո զգալով, որ իր չարչարանքը իզուր է, որ այդ պատերից ու ճաղերից պրծում չկա՝ հոգնած, հևասպառ փռվում էր վանդակի մի անկյունում, գլուխն առնում թաթերի մեջ ու փակում աչքերը։ Նա հիշում էր անապատի իր ընկերներին, հիշում էր անապատի իր ազատությունը, և ոչ ոք չէր նկատում, որ առյուծն արտասվում է։

— Ի՜նչ լավ առյուծ է,— կանչում էին մարդիկ,— ի՜նչ մեծ առյուծ է։ Այսպիսի առյուծ մենք դեռ չենք տեսել։ Սա աշխարհի բոլոր առյուծներից ամենամեծն է ու ամենից ուժեղը։

Ամեն օր, առավոտից երեկո իրենց ընտանիքներով ու ընկերներով գալիս էին մարդիկ, խմբվում նրա վանդակի առջև, աղմուկ-աղաղակով զարմանում նրա մեծության ու գեղեցկության վրա, իսկ առյուծը կամաց-կամաց մոռանում էր անապատի իր հիշողությունները և կամաց-կամաց դառնում ավելի հանգիստ, ավելի հնազանդ։

Մարդիկ այնքան գնացին եկան, որ առյուծը ընտելացավ նրանց խոսակցությանը և նույնիսկ սովորեց նրանց լեզուն։ Մարդկանց ասածները նա հասկանում էր, միայն պատասխանել չէր կարողանում։

— Ի՜նչ գեղեցիկ առյուծ է,— կանչում էին բոլորը,— սա աշխարհի ամենաուժեղ և ամենամեծ առյուծն է...

Առյուծը լսում էր և ուրախանում, որ ինքն ամենից մեծ և ամենից ուժեղ առյուծն է։ Եվ քանի որ մարդկանց խոսքերը նրան դուր էին գալիս, նա սկսեց կատարել նրանց խնդրանքը։

— Վե՛ր կաց,— խնդրում էին,— քեզ մի լավ տեսնենք։— Եվ առյուծը ելնում էր։

— Բա՛ց երախդ։ Ի՜նչ մեծ ատամներ ունես...

Հետո մարդիկ ցանկացան, որ առյուծը պատիվ անի իրենց՝ անշարժ կանգնի ու իրենք վանդակի պողպատե ճաղերի մոտ նրա հետ նկարվեն։ Անապատի իր հուշերը մոռացած առյուծի համար ավելի մեծ հաճույք չկար, քան այն, որ իր անունը մարդկանց բերանից չի իջնում, որ բոլոր գազաններին մոռացած, միայն ու միայն իրենով են զբաղվում ու ինքն է այս հսկա գազանանոցի միակ հմայքը։ Բոլորն անխտիր ցանկանում էին նրա հետ նկարվել, և առավոտից երեկո առյուծը պոչը տնկած, բաշը գզած, հպարտ կանգնում էր։ Լուսանկարչական ապարատ-



# ԱՐՁԱՆԸ

ՄԱՆՈՒԿ ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ

ների չխչխկոցից իրենց վանդակներում պարապ-սարապ վեր ընկած մյուս գազանները նույնիսկ չէին կարողանում ննջել։ Այդպես անընդհատ անշարժ կանգնելուց սկզբում ընդարմացան ու ապա քարացան նրա պոչն ու ոտքերը, բայց ոչ ոք չնկատեց, հետո բաշն անշարժացավ, ապա աչքերն սկսեցին սառել, չշարժվել ու մի օր էլ հանկարծ մարդիկ նկատեցին, որ առյուծն այլևս չի շնչում, որ նա կենդանի առյուծ չի, այլ՝ մի արձան։ Եվ քանի որ կենդանի առյուծը դարձել էր առյուծի արձան՝ գազանանոցի մուտքի մոտ մի հսկայական պատվանդան սարքեցին ու առյուծին մեծ շուքով կանգնեցրին վրան։

Հիմա բոլոր գազանանոցների առջև աշխարհի ամենից մեծ և ամենից ուժեղ առյուծներն են արձանացած կանգնած։

Եվ երևի նրանց բոլորի պատմությունն էլ այսպիսին է։

# ՄԱՐԴԸ ՈՉ ՄԻ ԲՆԱԿԱՆ ԹՇՆԱՄԻ ՉՈՒՆԻ

●

ԼԵՎՈՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ
(Կենսաբանական գիտությունների դոկտոր)

Ներկայումս մարդը ոչ մի բնական թշնամի չունի: Երկրագնդի ամենահզոր կենդանիներն իսկ մեզ համար միանգամայն անվնաս են: Համարյա անվնաս են նաև վանական վիրուսները, միկրոօրգանիզմներն ու բակտերիաները: Մարդը սահմանափակում է դրանց տարածումը և ոչնչացնում իսպառ: Համաճարակները մոլեգնում են միայն երկրագնդի տնտեսապես և կուլտուրապես թույլ զարգացած, հետամնաց երկրներում: Բնական և ոչ մի ուժ մարդու համար մասսայական ոչնչացման սպառնալիք չի հանդիսանում:

Այդ է պատճառը, որ մարդը ներկայումս աճում է աննախընթաց թափով: 600 հազար տարի է պահանջվել, որպեսզի երկրագնդի բնակչությունը հասնի 3,5 միլիարդի: Սակայն ընդամենը 35 տարի հետո այդ թիվը կկրկնապատկվի: Ներկայումս երկրագնդի բնակչությունը շաբաթական ավելանում է 1,4 միլիոն մարդով, այսինքն, մեր մոլորակի բնակչությունը տարեկան ավելանում է 73 միլիոն մարդով:

Սա հազվագյուտ երևույթ է բնության մեջ, որտեղ յուրաքանչյուր կենդանի, յուրաքանչյուր օրգանիզմ ունի իր սահմանափակող ֆակտորը: Նույնիսկ գերհզոր կենդանիները ունեն իրենց բնական թշնամիները: Ճիշտ է, հասուն վիճակում առյուծը, վագրը և մյուս հզոր կատվակերպները քիչ թե շատ վտանգավոր թշնամիներ չունեն, այնուամենայնիվ, նրանց ձագերը մասսայաբար ոչնչացվում են վանական գիշատիչների կողմից: Քիչ թվով առյուծի ու վագրի ձագեր են հասուն կենդանիներ դառնում:

Բնության մեջ մարդու ամենամեծ թշնամին մնացել է մարդն ինքը:

Միչիգան լճի ափին հարյուրավոր խոշոր արդյունաբերական ձեռնարկություններ կան: Դրանք լիճն են թափում հարյուր հազարավոր տոննա քիմիական վանական նյութեր և նավթամթերքներ: Դրա հետևանքով լիճը աստիճանաբար կորցնում է թթվածինը, որն իր հերթին հանգեցնում է կենդանական աշխարհի ոչնչացմանը: Վերջերս մի քանի նեգր երեխաներ լճից հանեցին ջրերում լողացող մի ձմերուկ և կերան: Նրանցից երկուսը մահացան. իսկ մյուսները հազիվ փրկվեցին ծանր թունավորումից:

Լոս-Անջելոս քաղաքում ապրում է մոտ 3 միլիոն մարդ: Այստեղ համարյա այդքան էլ ավտոմեքենաներ կան: Դրանք տարեկան այրում են մոտ 30 հազար տոննա բենզին, ապականելով քաղաքի օդը և թունավորելով մարդկանց: Փարիզի ավտոտրանսպորտը օդ է արձակում օրական 50 միլիոն խորանարդ մետր ածխածնի օքսիդ: Էլ ավելի վատթար է վիճակը Տոկիոյում, Նյու-Յորքում, Լոնդոնում և այլ քաղաքներում:

ԱՄՆ-ի արդյունաբերական ձեռնարկությունները մթնոլորտ են արտանետում տարեկան ավելի քան 125 միլիոն տոննա մուր: Անգլիայում այդ ցուցանիշը անցնում է 2,5 միլիոնից: Ամեն տարի օդի հետ անգլիացիները ներծծում են 24 միլիոն տոննա վանական վտանգավոր նյութեր (մուր, ծծումբի օքսիդներ, ածխածնի օքսիդ): Այսինքն յուրաքանչյուր բնակչին բաժին է ընկնում 0.5 տոննա կոշտ նյութ: Ահա թե ինչու Անգլիայում բրոնխիտի հետևանքով մահացության տոկոսը 50 անգամ ավելի բարձր է, քան Դանիայում և 20 անգամ ավելի բարձր, քան Նորվեգիայում և Շվեդիայում:

Մթնոլորտի աղտոտվածությունը մարդու վրա հատկապես կործանարար է ազդում այն դեպքում, երբ մթնոլորտային պայմանները նպաստում են գետնամերձ շերտերում սառը օդի կուտակվելուն (հատկապես այսպես կոչված ինվերսիայի երևույթի դեպքում): Առաջանում է հանրահայտ սմոգի երևույթը: 1952 թ. դեկտեմբերի 5—8-ը Լոնդոնում ծծմբային անհիդրիդի քանակությունը կտրուկ կերպով ավելացավ: Դրա հետևանքով 4 օրվա ընթացքում մահացավ ավելի քան 4 հազար մարդ: Նույնպիսի երևույթ է նկատվել նաև արդյունաբերական այլ խոշոր շրջաններում, և հատկապես Ռուրի մարզում, Լյեժ քաղաքի շրջակայքում, ԱՄՆ-ի Պենսիլվանիայի նահանգում և այլն:

Այդպիսի երևույթից տուժում են ոչ միայն մարդիկ, այլև բնությունը: ԱՄՆ-ում մետաղաձուլական գործարանի վնասակար գազերը հսկայական տարածության վրա ոչնչացրել են բնական անտառները:

Ներկայումս մթնոլորտում գերակշռում են իսկական թույն հանդիսացող ածխածնի օքսիդը և ածխաթթու գազը, որոնց քանակությունը օդի մեջ համաշխարհային մասշտաբով տարեկան ավելանում է 0,2 տոկոսով: Դա խորը ազդեցություն է թողնում մեր մոլորակի քիմիական հավասարակշռության վրա:

Երկրագնդի արդյունաբերական ձեռնարկությունները և տրանսպորտը օդ են արտամղում տարեկան 6 միլիարդ տոննա ածխածին: Անցած ամբողջ հարյուրամյակի ընթացքում օդ է բաց թողնված 400 միլիարդ տոննա ածխածին: Մթնոլորտում ածխածնի կոնցենտրացիան ավելացել է 10 տոկոսով:

Ինչպես նշում են գեոֆիզիկոսները, դա վերջին հաշվով կարող է բարձրացնել մթնոլորտի և ծովերի ընդհանուր ջերմաստիճանը: Ինչպես հայտնի է, սառը ջրերում թթվածնի պարունակությունը միշտ ավելի է, քան տաք ջրերում: Այս երևույթը հանգեցնում է կենդանի օրգանիզմների մասսայական ոչնչացմանը: Արդյունաբերական ձուկը կամ հեռանում է դեպի սառը ջրերը, կամ ոչնչանում:

Ձկների հետ միասին ափերը թողնում հեռանում են նաև ջրագռավները, ջրխոթանները և ծովային այլ թռչունների բազմամիլիոնանոց երամները: Լեռների մերկացած լանջերին, ծովափի անապատային մասերում, որտեղ սովորական տարիներին դիտվում է խաղաղ, պարզ եղանակ, փոթորիկներ են մոլեգնում, հորդառատ անձրևներ են տեղում, գետերը ջրառատ են դառնում:

Բնության կողմից դրված այս «գիտափորձը» շարունակվում է մոտ մեկ ամիս: Այդ էլ բավական է կռահելու համար, որ բնությունը այնքան կգայուն, նուրբ օրգանիզմ է, որ բնական պրոցեսների ամենաչնչին խախտման դեպքում անգամ առաջանում է հետևանքների երկար շարան, շղթա:

Գիտնականները ենթադրում են, որ մթնոլորտի ջերմաստիճանը 8—10 %-ով բարձրանալու դեպքում կսկսեն հալվել Արկտիկայի, Անտարկտիդայի և բարձր-լեռնային շրջանների սառցադաշտերը (միայն Անտարկտիդայի սառույցները ձգվում են ավելի քան 1000 կիլոմետր, որոնց միջին բարձրությունը կազմում է 3,0 կմ, իսկ ընդհանուր ծավալը անցնում է 24 միլիոն խորանարդ կիլոմետրից): Դրա հետևանքով օվկիանոսի մակարդակը կբարձրանա 56 մետրով, և երկրագնդի արգավանդ հողատարածությունների մոտ 40 %-ը կմնա ջրի տակ:

Որոշ ժամանակ անց կսկսվի հակառակ պրոցեսը: Քանի որ ամպամածության բարձրանալու հետևանքով օդի ջերմաստիճանը կսկսի իջնել, ապա սառցադաշտերից ազատված բևեռներում և բարձր լեռնային շրջաններում կկուտակվեն օդի հսկայական սառը հոսանքներ, որոնք ժամանակ առ ժամանակ կսուրան երկրագնդով մեկ, ամենուրեք իջեցնելով օդի ջերմաստիճանը: Վրա կհասնի սառցակալման նոր դարաշրջանը:

Կան գիտնականներ, որոնք ենթադրում են, որ մեր մոլորակի վրա առաջացել, զարգացել ու կործանվել են մի քանի քաղաքակրթություններ: Կործանման պատճառը համարում են մարդու կողմից վտանգավոր նյութերի և էներգիայի աղբյուրների հայտնագործումը, որոնց չարաշահումը, իբր, վերջ ի վերջո կործանում է իրենց իսկ ծնող քաղաքակրթությունը:

Այդ գիտնականները մոռանում են մի կարևոր հանգամանք: Տեխնիկայի, գիտության զարգացման հետ միասին մարդը ավելի շրջահայաց է դառնում, ավելի կզգուշությամբ է վարվում վտանգավոր քիմիական նյութերի և էներգիայի նոր աղբյուրների հետ: Դրա ապացույցը մթնոլորտում ու ջրում ատոմային փորձարկումների դադարեցումն է, ատոմային վենքի արտադրության արգելումը, որի վերահսկողությունը իրենց ձեռքըն են վերցրել աշխարհի հզորագույն երկրները՝ Սովետական Միության նախաձեռնությամբ: Միջազգային մի շարք հեղինակավոր կազմակերպություններ իրենց ձայնն են բարձրացնում այդ միջոցառումները կյանքում անշեղորեն կիրառելու օգտին: Ավելին, այժմ բոլոր երկրներում մարդկանց ուշադրության կենտրոնում են գտնվում բնության պահպանության հարցերը: Ամբողջ աշխարհի գիտնականները հետևում են մթնոլորտի ու ջրի աղտոտման պրոցեսներին, կոնկրետ միջոցառումներ են ձեռնարկում վտանգը կանխելու, բուսական ու կենդանական աշխարհը պահպանելու, հողերը էրոզիայից փրկելու համար:

Կասկած լինել չի կարող, որ բանական մարդը այս պայքարում կհաղթի գործարար մարդուն, լրիվ կճանաչի բնության օրինաչափությունները և իր ամբողջ գործունեությունը այնպես կվերակառուցի, որ մեր մոլորակը վերծ մնա վտանգներից, կպահպանի բնության հարստությունները և անկորուստ կկտակի այն հետագա սերունդներին:

# ԹՈՒՐՔՄԵՆԱԿԱՆ ԱՌԱԾՆԵՐ

*

Պատանին մահից չի վախենում, իսկ ձին՝ վազքից:

*

Սուտ պատմության բոլոր վրկաները մահացած են լինում:

*

Տատանվողի վրա հույս մի՛ դնի, ջրի վրա մի՛ հենվի:

*

Բարեկամությունը ապակի է, փշրեցիր՝ էլ չես կարող կպցնել:

*

Ընկերոջ հինն է լավ, հագուստի՝ նորը:

*

Երկար գնացողը մոլորվում է, շատ խոսողը՝ ստում:

*

Սարերը և քարերը քամուց են կործանվում, մարդկային բարեկամությունը՝ խոսքից:

*

Դատարկ պարկը կանգնած չի մնա:

*

Ծուռ փայտին մի հենվի, ինքդ էլ կծովես:

*

Ընկեր չունեցող մարդը անթև թռչուն է:





# ԹՈՒՐՔՄԵՆԻԱ

*Թուրքմենիան մեր Հայրենիքի ամենահարավային հանրապետությունն է։ Դարեր շարունակ նա եղել է անծայրածիր անապատների և փոքրիկ օազիսների երկիր։ Տարվա մեծ մասը այստեղ երկու գույն է իշխել՝ դեղինը և կապույտը՝ ավազի և երկնքի գույնը։*

*Սովետական իշխանության հաստատումը շրջադարձային եղավ թուրքմեն ժողովրդի կյանքում։ Նա դարձավ իր երկրի, նրա դարավոր մշակույթի և բնական հարստությունների տերը, գտավ ազատություն և երջանկություն։*

*Այսօր Սովետական Թուրքմենիան այն անծայրածիր անապատների երկիրն է, որտեղ ավազների դեղին ֆոնի վրա փռվել են նույնքան անծայրածիր կանաչ այգիներն ու բամբակի սպիտակ դաշտերը, բարձրացել են արդյունաբերական հզոր ձեռնարկությունները։*

## ՓՈՔՐԻԿ ՌԱՋԱԲԻ ՄԱՍԻՆ

Կ. ՏԱՆԳՐԻԿՈՒԼԻԵՎ

### ԱՐԵՎԸ ՀԻՎԱՆԴԱՑԵԼ Է

*Աշուն էր: Քաղաքի վրա կախվել էին մութ ամպերը: Առավոտյան ընկերոջս հետ պետք է տեղ գնայինք, բայց նայելով երկնքին, սկսեցինք խոսել.*

*— Այսօր, երևի անձրև կգա:*

*— Արևն էլ, հավանաբար, դուրս չի գա:*

*Փոքրիկ Ռաջաբը ասաց.*

*— Արևը հիվանդացել է: Թե չէ՝ նա ամեն օր ինձնից շուտ էր զարթնում:*

### ՈՉԻՆՉ

*Մի անգամ աշխատանքի վայրում մոռացա մի կարևոր իր և այդ մասին հիշեցի այն ժամանակ, երբ տուն էի հասել: Ստիպված էի ետ վերադառնալ: Ռաջաբը մտածեց, թե ես խանութ եմ գնում:*

*— Հայրի՛կ, խանութից ի՞նչ ես բերելու ինձ համար:*

*— Ոչինչ,— ասացի ես և տնից դուրս եկա:*

*Երբ տուն վերադարձա, պարզվեց, որ Ռաջաբը համբերությամբ ինձ է սպասում:*

*— Հայրի՛կ, ոչինչը բերի՞ր:*

### ԿՈՆՖԵՏ Է ՑԱՆՈՒՄ

*Պարտեզում դրսում էի ցանում: Փխրեցնում էի հողը, փոս փորում, նետում սերմերը և հողով ծածկում:*

*Տեսնելով այդ, Ռաջաբը վերցրեց իր փոքրիկ բահն ու սկսեց փոս փորել:*

*— Ի՞նչ ես ցանելու,— հարցրի ես:*

*— Կոնֆետ:*

Թարգմ. Վ. ՆԱԼԲԱՆԴՅԱՆԻ

## ԴՐՈՒԺԻՆԱՆԵՐՈՒՄ



## ԵՎ ՋՈԿԱՏՆԵՐՈՒՄ

# ՑՈՒՑԱՀԱՆԴԵՍԸ ԲԱՑ Է ԲՈԼՈՐԻ ՀԱՄԱՐ

*Առաջին տպավորությունը, որ դիտողն ստանում է Գայի անվան դպրոցում բացված՝ ութից-տասներեք տարեկան աշակերտների նկարչական ցուցահանդեսից, հիացմունքն է, որը և նրան չի լքում՝ նկարները կրկին ու կրկին նայելիս։ Երեխաները կարողացել են տեսնել աշխարհի գեղեցկությունները, սովորականի մեջ նկատել արտասովորն ու գրավիչը և իրենց խոհերն ու հույզերը գույների միջոցով հաղորդել դիտողին։ Յուրաքանչյուր նկար մի հայտնագործություն է՝ երբեք իրար չկրկնող նրբերանգներով ու մտածողությամբ։ Տասնամյա Գեղեցիկի նկարած ծաղիկները հնարավոր չէ շփոթել նրան հասակակից Նելլիի նույնպիսի աշխատանքի հետ, ոչ էլ Անուշիկի նկարած գեղարվեստական չմշկասահքը՝ Ռուզանի նկարածի հետ։ Ի դեպ՝ Անուշիկը ցուցահանդեսի ամենաակտիվ մասնակիցն է։ Նա նկարել է գարնանային բնանկար, նկարազարդել հեքիաթներ ու պատմվածքներ։ Իսկ «Գայականներ» նկարի համար մրցանակի է արժանացել «Պիոներ կանչ» թերթի կազմակերպած «Արևի երկիր, իմ Հայաստան» մրցանակաբաշխությունում։*

*Ցուցահանդեսի յուրաքանչյուր մասնակից ունի իր նախասիրությունը. եթե Հրանտը, Վարդուհին, Աղասին նկարել են իրենց սիրելի կենդանիներին, ապա Արթուրին հրապուրել են անցյալում տեղի ունեցող սուսերամարտերը, Հակոբին՝ դաշտում վար անող տրակտորը, Գայանեին՝ արևով ողողված աֆրիկյան բնությունը, իսկ Հովհաննեսին՝ հայրենի քաղաքի տեսարանները։*

*...Քառասուն շնորհալի աշակերտներ են մասնակցում դպրոցի նկարչական խմբակի պարապմունքներին։ Երիտասարդ ուսուցիչ Ռաֆիկ Ալավերդյանը սիրով ու հետևողականորեն խրախուսում և ընթացք է տալիս նրանց նոր ծլարձակվող ընդունակություններին։*

ԳՐԻԳՈՐ ՄԱԿՈՒՆՑ



1. ՉԱՐՉՅԱՆ ԳԵՂԵՑԻԿ
2. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ ԱՆՈՒՇԻԿ

# ՄԱՐԴՈՒ ԱՐՏԱՔԻՆԸ ԵՎ ՄԱՐԴՈՒ ԷՈՒԹՅՈՒՆԸ

ԱԼ. ԳՈՐԲՈՎՍԿԻ

## 2. «ԻՐԵ՞ՆԸ, ԹԵ՞ ՈՒՐԻՇԻՆԸ»

Մենք բոլորս մաքրում ենք մեր ատամները: Մեր աչքին սպիտակ ատամներն են գեղեցիկ: Բայց կան ժողովուրդներ, որոնք, ընդհակառակը, համոզված են, որ սպիտակ ատամները զզվելի են: Հենց այդ պատճառով է, որ Նոր Գվինեայում ատամները սև են ներկում:

Նման օրինակներ շատ կարելի է բերել:

Մեզ մոտ ընդունված չէ, որ կանայք քթին օղ անցկացնեն: Իսկ Աֆրիկայի որոշ շրջաններում քթին մեծ օղ չունեցող կինը, աֆրիկացու կարծիքով, շատ ծիծաղելի և նույնիսկ անվայելուչ տեսք ունի: Դավիդ Լիվինգստոնը հարցրել է, թե ինչու են քթին օղ անցկացնում, նրան պարմանքով պատասխանել են.

— Պարզ չէ՞, գեղեցկության համար: Տղամարդիկ բեղ ու մորուք ունեն, իսկ կանայք՝ ոչ: Ինչի՞ նման կլինի կինը առանց այդ օղի: Նա տղամարդու նման բեղ կունենար, բայց առանց բեղի: Այ քեզ ծիծա՜ղ:

Բնական է, որ միմյանց հետ շփվելով, ժողովուրդները հարստանում են հոգևոր կուլտուրայով, իրարից փոխ առնում կուլտուրայի պատմական ձևեր: Դեռևս Հերոդոտը գրել է, թե լիկիացիների մոտ ընդունված էր հագնել միլիթական զգեստներ և եգիպտական զրահ: Եգիպտոսում սիրով օգտագործում էին Կրետե կղզու ամանեղենը, իսկ Կրետեում ընդհակառակը՝ եգիպտականը: Հռոմեացի հեղինակներից մեկը իր ժամանակակիցների մասին գրում է, թե նրանք սիրում էին երգել իսպանական ու եգիպտական երգեր:

Բայց տարբեր կուլտուրաների փոխադարձ ազդեցության մի յուրահատուկ ասպարեզ է ազգային հագուստը: Այս հարցի շուրջը երկու հակադիր տեսակետ գոյություն ունի: Դրանցից մեկը պահպանողական տեսակետն է, որ մերժելով մերժում է այն ամենը, ինչ նոր է և օտարամուտ: Մյուսը՝ հրճվանքով ընդունում է ամենայն ինչ, միայն թե եկած լինի դրսից:



Բարեբախտաբար, ժամանակը, ծայրահեղությունները մի կողմ դնելով, ի վերջո գտնում է ինչ-որ խելամիտ միջին ճանապարհ:

17-րդ դարի Անգլիայում լույս տեսած մի գիրք, նվիրված կիրթ վարվելաձևին, ընթերցողներին խորհուրդ էր տալիս, օտարերկրյա զգեստների տեսակները անվերջ փոխարինելու տեղ, օրինակ վերցնել ռուսներից՝ «մոսկովիտներից», որոնք խնամքով պահպանում են իրենց ազգային հագուստը և չեն ենթարկվում օտար նորաձևություններին: Ասենք, «մոսկովիտների» համար հեշտ էր պահպանել իրենց հագուստի ինքնատիպությունը, քանի որ օրենքն իսկ հետամուտ էր դրան: 1675 թվականին հրապարակվում է արքայական մի հրովարտակ, որով բոլոր պալատական սեղանապետներին, մառանապետներին, մոսկովյան ազնվականներին ու բնակիչներին հրամայվում է. «որպեսզի նրանք օտարերկրյա, գերմանական և այլ սովորույթները չընդօրինակեն, մազերը չկտրեն, իսկ զգեստները՝ մուշտակն ու կապան օտարերկրյա օրինակով չհագնեն և իրենց հպատակներին էլ թույլ չտան հագնել: Եվ եթե այսուհետև որևէ մեկը մազը կտրի կամ օտարերկրյա ձևի զգեստ հագնի կամ էլ այդպիսի զգեստ նրա ենթական հագնի, ինքը կշընորհազրկվի Մեծն թագավորի կողմից և բարձր աստիճանից կիջեցվի ստորին աստիճանի»:

Միխայիլ Ռոմանովի թագավորության օրոք Մոսկվայում գտնըվող գերմանացի ճանապարհորդ Օլեարին հատկապես նշել է, որ ռուսները ոչ մի արտասահմանյան զգեստ չէին ընդօրինակում և նույնիսկ Ռուսաստանում գտնըվող կամ այնտեղով անցնող օտարերկրացիները, «եթե չէին ուզում ծիծաղի առարկա դառնալ, պետք է ռուսական զգեստ հագնեին»:

Բայց ահա Պետրոս I-ը եվրոպական զգեստը ներմուծեց նույնպիսի եռանդով, որպիսի եռանդով նրանից առաջ արգելվում էր այն: Պետրոսն արգելեց խանութներում ռուսական զգեստ վաճառել, իսկ

---

Սկիզբը՝ «Գիտելիք» N 1:

պերձակներին արգելեց կարել: Եվ այդ նորաձևության տարածմանը օգնելու համար մայրաքաղաքի բոլոր դարբասների մոտ մանեկեններ, կամ ինչպես այն ժամանակ էին գրում՝ «խրտվիլակներ» դրին, որոնց հագցնում էին ֆրանսիականի կամ հունգարականի նման զգեստներ:

Պետրոս I-ը չբավարարվեց դրանով: Քաղաքի նույն այդ դարբասների մոտ նշանակվեցին մարդիկ, որոնք հետևում էին, որ քաղաք մտնող կամ քաղաքից դուրս եկողների կապաների երկարությունը սահմանվածից ավելի չլինի: Եվ, ստուգելու համար, մարդուն չոքեցնում էին և զգեստի ծայրը կտրում այնպես, որ կապայի փեշը հազիվ հասներ գետին: Մի քանի հարյուր կապա կրճատելուց հետո, մկրատավոր պահակները մնացին անգործ: Կարճ կապա հագնելու սովորույթը մտավ ուժի մեջ:

Պետրոսին հաջորդած թագավորները եվրոպական քաղաքակրթության արտաքին կողմը



պատվաստելու ձգտման մեջ անցնում էին առողջ բանականության սահմանները: Եկատերինա II-ի օրոք պահակատների բոլոր ծառայողները հագնում էին մոդայիկ սերթուկներ ու ժաբո: Նրանց լոռնետներ են տալիս: Եվ բոլոր խաչմերուկներում, ուղեփակոցներում հայտնվում են ժաբո կրող այդ անհեթեթ ու տարօրինակ կերպարանքները. աչքերը կկոցելով, նրանք լոռնետներով նայում էին միմյանց, անցորդներին և անցնող կառեթներին: Դա իսկապես ծիծաղելի էր, բայց ով կհանդգներ դրա վրա թեկուզ ժպտալ:

Այդ նույն ժամանակ, երբ տամբովցի կամ սմոլենսկցի ոմն ազնվական հագնում էր արտասահմանից ներմուծած զգեստ, և ջանում էր ամեն ինչով նմանվել, ասենք, գերմանացու, այդ նույն ժամանակ գերմանական տոհմիկ ազնվականությունը, նույնիսկ արքայականներն ու հերցոգները, իրարից առաջ ընկնելով, ջանում էին ընդօրինակել անգլիական, ֆրանսիական կամ լեհական վերնախավին: Նույն բանն էր կատարվում նաև Ֆրանսիայում: Իսկ Անգլիայում դեռևս մեծ Շեքսպիրը «Վենետիկի վաճառականում» Պորցիայի բերանով ծաղրում է այն լորդերին, ովքեր կարճ կամզոլը բերում էին Իտալիայից, լայնածավալ տաբատները՝ Ֆրանսիայից, շլյապաները՝ Գերմանիայից, իսկ շարժուձևը՝ ամեն տեղից:

Ասենք, արտասահմանին կուրորեն ընդօրինակելու մասին խոսելիս, ըստ երևույթին, հարկ չկա այնքան հեռուները գնալ: Ցավով ու դառնությամբ բոլորս հիշում ենք «ստիլյագ» բառը: Ապտակի նման շրխկալով այդ բառը նետվում էր այն երիտասարդների երեսին, որոնք ապրելով հոգեկան ողորմելի կյանքով, կարծում էին, թե շալվարների նեղությունը կամ ջազի վաղեմի արքաների անձնական կյանքի մասին տեղյակ լինելը կարող է սեփական ոչընչության փոխհատուցումը լինել: Իսկ փոխհատուցել նրանք շատ էին ուզում: Եվ հետո շատ էին ուզում տարբերվել բոլորից: Ցուցադրել սեփական վառ և արտասովոր անհատականությունը:

«Աղետալին այն է,— մի առիթով ասել է բանաստեղծ Միխայիլ Սվետլովը,— որ շատերը ուզում են արտահայտել այն անհատականությունը, որ իրենք չունեն»:

Ասենք նաև այն, որ ամեն «օտարամուտ» բան ծաղր ու ծանակի ենթարկելը նույնպես ընդհանուր քիչ բան ունի լավ ճաշակ դաստիարակելու հետ: Նույնքան քիչ, որքան, ասենք, այնպիսի «ադմինիստրատիվ միջոցառումները», երբ շալվար հագած աղջիկներին կինո չէին թողնում կամ նույնիսկ միլիցիա էին տանում:

Բայց մենք ուժից վեր խնդիր կդնեինք մեր առաջ, եթե փորձեինք այս էջերում մեկընդմիշտ վճռել այն հարցը, թե ի՞նչ հարաբերության մեջ պիտի լինեն ազգայինն ու օտարը և՛ զգեստի, և՛ մոդաների մեջ: Այո՛, իսկապես ասած, նման հարցադրումը նույնիսկ սխալ կլիներ: Կարևոր է հիշել, որ զգեստի, ինչպես նաև այլ հարցերում չպետք է կոհաբերել ո՛չ անձնական, ո՛չ էլ ազգային արժանապատվությունը: Եվ ամենից քիչ պիտի ջանալ կյանքում պատահող տարբեր դեպքերի համար պատրաստի պատասխանների պաշար հավաքել:



Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ

Հարկավոր է սեփական ուսերին սեփական գլուխ ունենալ:

*(Նարոդնակելի)*

*Թարգմ. Մ. ԱՅՈՒՆՑԻ*

*Հայաստանի պիոներիայի պատմությունից*



# ԳՏԻ՛Ր ՔՈ ԿՈՉՈՒՄԸ

Մեր պիոներական (պատկոմական) կազմակերպությունը իր ստեղծման օրվանից դարձավ պատանեկության բնածին ընդունակությունների հայտնաբերման և կոփման իսկական դարբնոց:

Դպրոցների թիվը այն ժամանակ դեռ մեծ չէր, ոչ բոլոր պատանիներն էին ներգրավված դպրոցներում և պիոներական կազմակերպությունը լրացնում էր այդ բացը: Արվեստի և առհասարակ մշակույթի օջախներն էլ այն ժամանակ շատ քիչ էին, և այդ պայմաններում պիոներական կազմակերպության դերը մեծ էր: Այսպես, օրինակ, կոմպոզիտոր Ռոմանոս Մելիքյանը երգչախումբ կազմեց և, որպեսզի նրա խումբն առաջին անգամ Երևանում «Ինտերնացիոնալ» երգեր, խումբն համալրվեց պիոներներով:

Մենք ունեինք բազմապիսի սեկցիաներ՝ թատերական, նկարչական, երաժշտական, պարի: Առանձին գրական սեկցիա չկար, որովհետև բոլորս էլ գրական փորձեր էինք անում: Իմ գործունեությունը ավելի հաջող էր նկարչական սեկցիայում: Նկարում էինք պլակատներ և պատի թերթեր, դեկորներ՝ մեր թատրոնի համար, իսկ հետագայում արդեն փորձ ձեռք բերելով՝ ես դարձա «Պիոներ» ամսագրի, «Պիոներ կանչի», «Ավանգարդ»-ի և այլ թերթերի նկարիչը:

Մեր թատերական խումբը այնպիսի համարում էր ձեռք բերել, որ մենք ներկայացումներ էինք տալիս ոչ միայն մեր դահլիճում, այլև Սունդուկյանի անվան և այլ թատրոնների բեմերում:

Մեր կազմակերպության տաղանդավոր ղեկավար Ստյոպա Մանուկյանի գլխավորությամբ 1923 թ. մենք բեմադրեցինք «Սպարտակ» մարմնամարզական բալետը, որտեղ ես կատարում էի գլադիատորի պարը երկու սրերով: Ասեմ նաև, որ Թաթուլ Ալթունյանի երաժշտական տաղանդը առաջին անգամ բացահայտվեց մեր կազմակերպության մեջ. նա մեր երգչախմբի և լարային նվագախմբի ղեկավարն էր:

Պիոներների ուժերով մեր պիոներական բեմում կոմպոզիտոր Ումրշատը բեմադրեց առաջին մանկական օպերան Հայաստանում՝ «Սևուկ ուլիկը», որը լսելու էին գալիս քաղաքի բոլոր երեխաները:

Ես մասնակցում էի համարյա բոլոր խմբակների աշխատանքներին՝ նկարչական, երգի, պարի, թատերական, համարվում էի նաև ազատ շարժումներ կատարող լավագույն մարմնամարզիկը: Այս բոլորը ես պարծենալու համար չէ, որ ասում եմ, այլ հաստատելու համար իմ այն միտքը, որ ես պատանի հասակում փորձելով իմ ընդունակությունները պիոներական կազմակերպության սեկցիաներում, գտա այն բնագավառը, որտեղ կարող էին դրսևորվել և դրսևորվեցին իմ ընդունակությունները: Նկարչական սեկցիային եմ պարտական, որ զբաղվեցի նկարչությամբ, հետագայում դարձա ճարտարապետ (իհարկե, համապատասխան կրթություն ստանալով բարձրագույն ուսումնական հաստատությունում): Այս բոլորից հետո իմ խորհուրդը ձեզ, սիրելի՛ երեխաներ. դեռևս պիոներական հասակից, դեռևս պիոներական կազմակերպությունում փորձեք ձեր ընդունակությունները տարբեր բնագավառներում, որպեսզի գտնեք ձեր իսկական կոչումը, ձեր տեղը մեր հասարակության մեջ:

ՀՐԱՅՐ ԻՍԱՐԲԵԿՅԱՆ
Վաստակավոր ճարտարապետ

## ՀԱԶԱՐ ՈՒ ՄԻ ՀԱՐՑ ԱՇԽԱՐՀԱԳՐՈՒԹՅՈՒՆԻՑ

1. Եվրոպայի ո՞ր լեռների անվան սկզբնատառը հանելով կմնա մի այլ լեռների անվանում, որոնք նույնպես գտնվում են Եվրոպայում:
2. Ո՞րն է աշխարհի ամենամեծ օվկիանոսը: Ի՞նչ անվանումներով է նա հայտնի եղել և ո՞րն է պահպանվել:
3. Ո՞րն է աշխարհի ամենափոքր օվկիանոսը:
4. Ո՞րն է համարվում աշխարհի ամենատաք ծովը:
5. Ո՞րն է աշխարհի ամենախոր ծովը:
6. Ո՞րն է ամենածանծաղուտ ծովը:
7. Ո՞րն է աշխարհի ամենաջրառատ գետը:
8. Սովետական Միությունում ո՞ր լեռնաշղթան և գետը կրում են նույն անունը: Ինչո՞ւ է գետին այդ անունը տրվել:

---

Պատասխանները տե՛ս 23-րդ էջում։

# ԱՐԵԳԱԿՆԱՅԻՆ ՀԱՄԱԿԱՐԳԻ ՄՈԼՈՐԱԿՆԵՐԸ

Մերկուրի, Վեներա, Մարս, Ուրան, Սատուռն, Յուպիտեր, Պլուտոն, Նեպտուն, Երկիր: Դեռ հին ժամանակներից մարդիկ մեծ հետաքրքրություն են ցուցաբերել այս մոլորակների նկատմամբ, ներիակ գուշակություններ արել, բազմաթիվ վարկածներ առաջադրել: Հիշենք, թեկուզ, դրանցից մեկը՝ կյանք կա՞ արդյոք մյուս մոլորակների վրա: Առայժմ դըժվար է որոշակի պատասխան տալ: Բայց կգա ժամանակ, իսկ այդ ժամանակը հեռու չէ, երբ գիտության և, մասնավորապես, տիեզերագնացության զարգացումը որոշակի ու ճիշտ պատասխաններ կտա մարդկությանը դարեր շարունակ հուզող հարցերին և մյուս մոլորակները մարդը կճանաչի ու կսիրի այնպես, ինչպես հարազատ Երկիրը:

Այս համարից սկսած ձեզ ծանոթացնում ենք մոլորակների հետ:




## ՄԵՐԿՈՒՐԻ

Արեգակնային համակարգի ամենափոքր մոլորակը՝ Մերկուրին պտտվում է Արևի շուրջը մոտ 57,7 միլիոն **կմ** միջին հեռավորության վրա: Մյուս մոլորակների համեմատությամբ՝ նա շարժվում է ամենամեծ ուղեծրային արագությամբ՝ վայրկյանում 47,8 **կմ**, և մեր լուսատուի շուրջը մի պտույտ է կատարում 88 օրում:

Զինված աչքերով երբեմն հնարավոր է Մերկուրին տեսնել վաղ առավոտյան՝ արշալույսի ֆոնի վրա, ինչպես նաև երեկոյան՝ մայրամուտի ժամանակ: Դիտումների համար աննպաստ պայմաններ են Արևին շատ մոտ դիրքը և հեռավորությունը Երկրից:

Մերկուրին շատ քիչ է ուսումնասիրված: Միայն քսան տարի առաջ, երկարատև բարդ չափումներից ու հաշվումներից հետո, գիտնականները վերջապես որոշեցին, որ Մերկուրիի տրամագիծը հավասար է 4840 **կմ**:

1891 թվին Սկիապարելին մոլորակների մակերևույթների քարտեզը կազմելիս պարզեց, որ Մերկուրիի սկավառակի վերին մասում գտնվող հիմնական բիծը միշտ մնում է նույն տեղը: Դա նշանակում է, որ մոլորակը միշտ մի երեսով է պտտվում Արևի շուրջը, և իր առանցքի ու մեր լուսատուի շուրջը մի պտույտ կատարելու ժամանակները հավասար են: Կարծիք հայտնվեց, որ Մերկուրիի լուսավոր երեսին միշտ ցերեկ է լինում և ջերմությունը հասնում է մինչև $+400°C$, իսկ հակառակ երեսին թագավորում են հավերժական գիշերն ու սառսափելի ցուրտը:

Բայց 1965 թվին Արեսիբոյի մեծ ռադիոտելեսկոպով կատարած դիտումները լրիվ փոխեցին Մերկուրիի մասին մինչ այդ եղած պատկերացումները: Ռադիոլոկացիոն տվյալները ցույց տվեցին, որ իր առանցքի շուրջը Մերկուրին մի պտույտ է կատարում 59 օրում: Հետևաբար մոլորակի երկու երեսներն էլ ունեն գիշեր ու ցերեկ և ջերմաստիճանների միջև մեծ տարբերություն չկա: Մերկուրիի մեկ օրը հավասար է երկրային մոտ 180 օրվա:

Գիտնականները ենթադրում են, որ Մերկուրին պետք է ունենա Լուսնին նման մակերևույթ, նույնպիսի ընդարձակ հարթություններ և բարձր ժայռոտ լեռներ: Որոշվել է նաև Մերկուրիի մասսան: Չնայած համեմատաբար փոքր չափերին, Մերկուրին բավականին մեծ կշիռ ունի: Հավանաբար մոլորակը կազմված է ծանր էլեմենտներից, ունի բարձր ջերմությամբ երկաթե միջուկ, որը և նպաստում է հրաբուխների անընդհատ գործունեությանը:

Մինչև վերջերս գիտնականները մի ընդհանուր կարծիքի չէին նաև Մերկուրիի մթնոլորտի հարցում: Ավելի շատ ենթադրվում էր, որ Արևից ստացած մեծ ջերմության հետևանքով նա չի կարող ունենալ գազե պատյան: Նոր տվյալները ցույց են տալիս, որ Մերկուրին մթնոլորտ ունի, որը, ըստ երևույթին, նոսր է իներտ գազերի պատճառով:

Ինչպես տեսնում եք, ենթադրություններն ավելի շատ են, քան ճշգրիտ տեղեկությունները: Դեռ շատ վիճելի ու չլուծված հարցեր կան: Միայն այն ժամանակ, երբ Մերկուրի հասնեն տիեզերական ավտոմատ կայանները և սկըսեն Երկիր հաղորդել հարուստ ու անհերքելի տվյալներ, հնարավոր կլինի ամբողջական ու ճիշտ պատկերացում կազմել այդ մոլորակի մասին:

## ԿԵՆԴԱՆԻ ԼԱՊՏԵՐԻԿՆԵՐ

Կան ծովային շատ կենդանիներ, ինչպես և մի շարք միջատներ, որոնք ընդունակ են մթության մեջ լույս արձակելու: Լուսատու կենդանիներին երբեմն օգտագործում են իբրև բնական լապտերիկներ: Այսպես, օրինակ, 1935 թվականին Փարիզի

օվկիանոսագիտության ինստիտուտի մեծ դահլիճը լուսավորեցին տարօրինակ լապտերներով: Դրանք ապակե անոթներ էին՝ լցված ծովային լուսատու մանրէներով և ջրով: Այդ անոթներն արձակում էին շատ գրավիչ լույս՝ ստեղծելով գիշերային ծովի տեսարան:

Շատ օրգանիզմներ, որոնք լույս են արձակում, այդ հատկությունը չեն կորցնում նաև մեռնելուց հետո: Երկրորդ համաշխարհային պատերազմի ժամանակ ճապոնական սպաներին տվել էին հատուկ ծրարներ՝ լըցված խեցգետնիկի փոշով: Հենց որ սպաները լույսի կարիք էին զգում, թրջում էին այդ փոշին, և նա արծաթավուն լույս էր արձակում, որը հեռվից չէր երևում, բայց մոտիկից այնքան պայծառ էր լինում, որ կարելի էր նրա տակ կարդալ կամ գրել:



Արևադարձային երկրներում սերինոս կոչվող փոքրիկ թռչունի ձագերը ձվից դուրս գալիս կտուցի շուրջը ունենում են լուսատու շերտ: Դա հնարավոր է դարձնում, որ մայր սերինոսը գիշերով էլ կերակրի փոքրիկներին և կերը առանց սխալվելու դնի ձագուկների բերանը:

# ՎԱՐԺԵՑՎԱԾ ՄԻՋԱՏՆԵՐ



*Դուք, հավանաբար, տեսած չեք լինի... լու: Այդ աներես, ցատկըրտան միջատը, ասում են, վարակ տարածելուց և մարդկանց ու կենդանիներին կծոտելուց բացի, եղել է նաև ծանրության բարձրացման ու թռիչքի «չեմպիոն»: Բայց հետաքրքիրն այն է, որ նրան նաև վարժեցրել են և դարձրել զվարճության առարկա:*

*Այսպես. մի ազնվատոհմ տիկին ունեցել է վարժեցված մի լու, որին լծել է փոքրիկ արծաթե հրանոթին, իսկ սա 80 անգամ ավելի ծանր է եղել, քան «նժույգը» ինքը, այսինքն՝ լուն: Հրանոթը լցնում էին վառոդով ու կրակ տալիս, իսկ լուն արիաբար դիմանում էր փորձությանը: Տիկինն իր ռազմիկ-լվին դնում էր տուփի մեջ, փաթաթում թավիշով ու պահում գրպանում:*

*Պատմում են նաև անգլիացի Մարկի մասին, որն իր լվին կապել էր ոսկե շղթայով, մատի երկարությամբ (1,16 գրամ), իսկ լուն այդ շղթան եզան պես քաշում էր իր ետևից: Անգլիացի մի վարպետ փղոսկրից կառք էր շինել և դրան լծել էր մի լու, որը քաշում էր վեցտեղանոց պստլիկ կառքը:*

*15-րդ դարում Փարիզում և Ֆրանսիայի այլ քաղաքներում լու վարժեցնողները ցուցադրում էին իրենց լվերի «տաղանդները»: Այսպես, օրինակ, միջնադարյան գիտնական բարոն Վալկեները (մահ. 1452 թ.) պատմում է «շնորհալի» լվերի կրկեսի մասին, որից տերերը բավականին մեծ եկամուտ քաղեցին: Չորս լու, ետևի թաթերին կանգնած, փոքրիկ նիզակները ձեռքներին, ռազմական վարժություններ էին կատարում: Երկուսն էլ լծված էին չորսակնանի ոսկե կառքին, որը քշում էր մի ուրիշ լու, փայտիկը ձեռքին, իբրև կառապան: Մի ուրիշ զույգ էլ քաշում էր հրանոթը: Երբ լվերը, ծանձրանալով, այլևս չէին ուզում շարունակել պահանջված վարժությունները, տերը նրանց գլխավերևում ճոճում էր փոքրիկ խանձողը, և սրանք նորից գործի էին անցնում: Վարժեցնողը պահեց այդ լվերի դիակները երկուսուկես տարի, և ցուցադրելով, բավական եկամուտ ստացավ:*




# ԻՆՉՊԵՍ ԳՏԱՆ ՍՏՈՐՋՐՅԱ ՔԱՂԱՔԸ

Տղաները սիրում էին Գլինյան կղզու մոտ լողանալ: Այստեղ ծովի մակերեսի վրա կղզին հիանալի տեսք ուներ և խորությունն էլ մեծ չէր: Եթե ստերոսմդ բավարար ճանակությամբ օդ պահեստես, ապա հանգիստ կարող ես հասնել հատակին: Իսկ այնտեղ զարմանահրաշ իրեր կան: Սկզբում երեխաները դրանց վրա այնքան էլ ուշադրություն չդարձրին: Երբ հավաքածուն շատացավ, Տոլիկ Պերեփցկիֆզսր ասաց.

— Երևի այստեղ գանձ կա թաղված կամ հնագույն ժամա-



# ԼԱՎԱԳՈՒՅՆ ՆՎԵՐԸ

*Երևանի Լենինյան շրջանի դպրոցականները իրենց ամենալավ նվերը ստացան պիոներիայի 50-ամյա հոբելյանի տոնակատարության նախօրեին։ Սեպտեմբերին դպրոցականների առջև իր դռները բացեց նորակառույց պիոներպալատը։ Պալատում գործելու են 44 տիպի շուրջ 160 խմբակներ, որոնք բաժանված են 4 բաժինների՝ գեղարվեստական, գիտատեխնիկական, մեթոդական և մասսայական։*

*Երևանյան լիճն ու Ս. Մ. Կիրովի անվան քիմկոմբինատի մարզադաշտը մեծ հնարավորություններ են տալիս բազմապիսի մարզական խմբակներ կազմավորելու։ Բացի լողի, ռադիոյի, կինոմեխանիկների, ֆոտոսիրողների, կարուձևի, մաթեմատիկոսների, կուլտմասսավիկների ու այլ խմբակներից, լինելու են նավաշինարարների, թեթևատլետների, ռադիոհաղորդումների (ռադիստ), թիավարների, աստղագետների, տիեզերագետների խմբակներ։*

*Օր-օրի կազմավորվում, համալրվում են խմբերը, որոնց ղեկավարում են ճանաչված մասնագետներ ու մանկավարժներ։*

նակների բնակավայր է։

Քաղաքը հեռու չէր, և պիոներները որոշեցին Տոլիկին ուղարկել ակադեմիա։ Ակադեմիայի գիտական աշխատողներին Տոլիկը ցույց տվեց ստորջրյա իրերը. նետերի ծայրակալներ, կանաչած դրամներ, մատանիներ, ապարանջաններ։

— Բայց սա իսկական գանձ է, որտեղի՞ց ես գտել։

Պիոները պատմեց Տաշքենդյան ծովի հեքիաթային կղզու, իր ընկերների ու գանձերի հայտնաբերման մասին։ Իսկ Տաշքենդյան ծով կոչվում է Անրեն գետի ափի ջրամբարը։

Մի խումբ հնագետներ անմիջապես մեկնեցին կղզի։ Թանկագին իրերը, որ թաքցրել էր կղզին, պատկանում էին հնագույն ժամանակների։ Այնտեղից հանեցին պղնձյա զարդեր, տարբեր քաղաքների դրամանիշեր, մետաղյա մանգաղներ, դանակներ, որոնք և հուշեցին գիտնականներին ստորջրյա քաղաքի առկայության մասին։ Այն հիմնադրված է եղել 16—17 դար առաջ և գոյատևել է մոտ ութ հարյուրամյակ։ Նրա բնակիչները աշխույժ առևտուր են արել շատ երկրների հետ, զբաղվել են անասնապահությամբ, հողագործությամբ, շատ կավե իրեր ու հուշանվերներ են արտադրել։

Հնագետները կղզու մոտերքում նոր բնակավայր հայտնաբերեցին, որի կառուցվածքը հուշում էր նախնադարյան լինելու մասին։ Այդտեղ հայտնաբերված իրերը վերաբերում են քարե դարին, մեզնից 80—100 հազար տարի առաջ։

Կ. ՏԻՉԻՆԱ

# «ՈՒՇԱԴԻՐ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԻ ՄՐՑՈՒԹՅՈՒՆ»

Սիրելի՛ բարեկամներ: Այս համարից սկսած՝ անց է կացվում մի մրցություն, որի նպատակն է՝ պարզել, թե ձեզնից ովքեր են «Պիոների» ամենաուշադիր ընթերցողները: Հարցերին կարող եք ճիշտ պատասխանել, եթե կարդացել եք ամսագրի նախորդ համարը:

Պատասխաններն ուղարկեք խմբագրության հասցեով:

Տարեվերջին մրցության հաղթողները կպարգևատրվեն:

1. Պիտի մարդ լինի հնձվորի պես,
Նրա պես լինի գործում ճարտար,
Նրա պես կյանքում՝ ազնիվ, արդար...

Ի՞նչ պոեմից են այս տողերը և ո՞վ է նրա հեղինակը:

2. «Բնավորությունը չար չէ, և փորձերը ցույց են տվել, որ շուտ մտերմանում է մարդուն»:

Ո՞րն է այդ հետաքրքիր կենդանին, ո՞վ է նրա մասին գրել:

3. «Գոմեշները հեռվից գլուխները բարձրացրին, նայեցին իրար և արձակեցին մարտական մռնչոցներ: Իմ սիրտը այնպե՜ս էր տրոփում, որ կարծես հիմա պիտի պայթեր»:

Հետո ի՞նչ եղավ: Ո՞վ է այս պատմվածքի հեղինակը:

4. «Կե՛ր, մուշտա՜կս, կե՛ր, մի՛ ամաչի: Էս փլավն անո՛ւշ արա: Համով է, չէ՞»:

Ո՞վ է այսպես ասել: Ինչո՞ւ: Ո՞վ է այս պատմության հեղինակը:

---

## ՀԱՆԵԼՈՒԿՆԵՐ

ԳԱՌՆԻԿ ԳԱԼՍՏՅԱՆ

Մի գանձարան կբացես
Ու կդառնաս հարուստ մարդ,
Թեև այնտեղ չես գտնի
Դու ո՛չ ոսկի, ո՛չ արծաթ:

(ժվկ.)

Գլուխը ծանրանում,
Թեքվում է կրծքին,—
Զմրո՛ւխտ է գարնանը,
Ամռանը՝ ոսկի...

(հոող)

Տանը լինես-չլինես,
Պիտի ինչի, կանչի քեզ:
Հազար պրույց է լսում,
Բայց ոչ մի բան չի հիշում:

(ոսվ/ոսգ7)

Փորում՝ կապույտ ջուր,
Քթի ծայրը՝ թաց,
Ձերմակի վրա
Եկավ ու գնաց:

(ոսչտոզծով)

Ամուր է քարի պես,
Սպիտակ է շաքարի պես:
Ծնվում է ջրից,
Մեռնում է հրից:

(Ցńսստը)

Խիտ ուլունք է, փայլուն է
Ու ոսկեհատիկ,
Բնությունը շարում է,
Քանդում են մարդիկ:

(նանտպ)

---

## ՊԱՏԱՍԽԱՆՆԵՐ

«ՊԻՈՆԵՐ» № 11

Բառաշղթա-գաղտնագիր

1. Հովսեփ Էմին: 2. Նաղաշ: 3. Շենգավիթ: 4. Թոնդրակ: 5. Կոմիտաս: 6. «Սպարտակ»: 7. «Կիլիկիա»: 8. «Առաքյալը»: 9. «Ընտիր»: 10. Րաքունի: 12. Իրան: 12. Նարեկացի: 13. Իջևան: 14. Նար-Դոս: 15. «Սոմա»: 16. Արեգ: 17. Գանձակ: 18. Կոնդ: 19. Դարեհ:



Եթե ինձ հարցնեին, թե որտեղ է ամենից շատ հրաշքներ կատարվում, ես կտայի Հայաստանի անունը:

ՌՈՔՈՒԵԼ ՔԵՆՏ

«ՊԻՈՆԵՐ» № 12

Մեղուն անցավ այս ճանապարհով:



ՊԻՈՆԵՐ № 1, 1972 Թ.

«Փորձեք լուծել»

1. 8 և 3: 2. 400 ձագ: 3. 3 գլուխ:

# ՊԱՏԱՍԽԱՆՆԵՐ

*(Հազար ու մի հարց աշխարհագրությունից)*

1. Եթե Իտալիայում գտնվող Ապենինյան լեռների սկզբնատառը հանենք, ապա կմնա Պենինյան լեռների անունը, որոնք գտնվում են Մեծ Բրիտանիայում։

2. Աշխարհի ամենամեծ օվկիանոսը Խաղաղ օվկիանոսն է, որը գրավում է 180 միլ. քառ. կիլոմետր տարածություն։ Այսինքն՝ համաշխարհային օվկիանոսի կեսը։ Նա անցյալում հայտնի էր Մեծ կամ Խաղաղ օվկիանոս անունով։ Պահպանվեց Խաղաղ օվկիանոս անունը։

3. Ամենափոքր օվկիանոսը Հյուսիսային Սառուցյալ օվկիանոսն է, որի տարածությունը 13 միլ. քառակուսի կիլոմետր է։

4. Աշխարհի ամենատաք ծովը համարվում է Կարմիր ծովը, որին շրջապատում են մի կողմից Աֆրիկայի, մյուս կողմից Ասիայի անապատային ընդարձակ տարածությունները։ Պատկերավոր ասած՝ երկու հսկա «վառարաններ», որոնք արևմուտքից և արևելքից տաքացնում են այս ծովը։ Այնպես որ նրա շիկացած լերկ ափերը ծովում ստեղծում են անտանելի շոգ, որը անցյալում մեծ դժվարություններով էին հաղթահարում նրա վրայով երթևեկող նավերը։ Հիշենք Բաբ-էլ-Մանդեբ նեղուցի անունը, որը այդ ծովը կապում է Հնդկական օվկիանոսի հետ, դա արաբերեն է և նշանակում է «արցունքի դարպաս»։ Անվանումն իսկ վկայում է, թե իր ժամանակին նրա վրա նավարկելը որքան դժվար է եղել։

5. Աշխարհի ամենախոր ծովը Խաղաղ օվկիանոսի մասը կազմող և Ինդոնեզիայի սահմաններում գտնվող Բանդա ծովն է։ Նրա հատակը ներկայացնում է երեք խոր իջվածք, որոնցից մեկը ունի 7440 մետր խորություն։

6. Աշխարհի ամենածանծաղուտ ծովը Ազովի ծովն է, որի միջին խորությունը կազմում է 8 մետր, իսկ առավելագույն խորությունը 13 մետր է։ Մի պահ համեմատեք այն Բանդա ծովի խորության հետ։ Տարբերությունը կլինի 574 անգամ։

7. Աշխարհի ամենաջրառատ գետը Ամազոնն է, որը գտնվում է Հարավային Ամերիկայում։ Տարեկան միջին հոսքը մեկ վայրկյանում հավասար է 120 հազ. խորանարդ մետրի։ Նրան իրավամբ համարում են մեր մոլորակի պարծանքը, բնության մեծագույն հրաշալիքներից մեկը։

8. Ինչպես հայտնի է, Սովետական Միությունում է գտնվում Ուրալյան լեռնաշղթան, որը սահմանն է Եվրոպայի և Ասիայի։ Այս լեռնաշղթան իր անունը տվել է նաև Ուրալ գետին, որը թափվում է Կասպից ծովը։ Գետը միշտ այդպես չի կոչվել. մինչև 1785 թվականը նա հայտնի էր Յաիկ անունով։ Բայց քանի որ այդ գետի անվան հետ կապվեց Եմելյան Պուգաչովի գլխավորած գյուղացիական նշանավոր ապստամբությունը, դրա համար Եկատերինա 2-րդ կայսրուհին հրամայեց փոխել Յաիկ անունը և գետը լեռնաշղթայի անունով կոչել Ուրալ։ Դրանով նա ցանկանում էր ջնջել նշանավոր ապստամբությունը հիշեցնող աշխարհագրական այդ անունը։

ԿԱՄՍԱՐ ԱՎԵՏԻՍՅԱՆ
*(Աշխարհագրագետ)*

## ՄԵՐ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԻՆ

**Խնդրում ենք գրել, թե այս համարի նյութերից որը ձեզ դուր եկավ և ինչի մասին կուզենայիք կարդալ հաջորդ համարներում։**

**«ՊԻՈՆԵՐԻ» ԽՄԲԱԳՐՈՒԹՅՈՒՆ**

Լույս է տեսնում 1923 թվականից



ՊԻՈՆԵՐ

№ 2 փետրվար 1972 թ.

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

Հյուսցազուն զինվորը — ՍԱՄԱԹ ՇԱՔԻՐ . . . 2
Ինչու էր լաց լինում Ձյունանուշիկը — Լ. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ . 2
Քանդակներ — ՄԻՔ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ . . . . . 2
Խաժոյենց Խաչոն — Ն. ԶԱՐՅԱՆ . . . . . 4
Ազնվություն — Ռ. ԲԱԲԼՈՅԱՆ . . . . . 7
Սպասիր գարնանը — Մ. ՍԱՐԳՍՅԱՆ . . . . 7
Հավամածուփ վերջին նմուշը — Գ. ՋԱՆԻԿՅԱՆ . . 8
Ուռենի — Թ. ԲՈԼՈՐՋՅԱՆ . . . . . . 10
Արձանը — Մ. ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ . . . . . 11
Մարդը ոչ մի բնական թշնամի չունի — Լ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ 12
Թուրքմենական առածներ . . . . . . . 14
Փոքրիկ Ռաչարի մասին — Կ. ՏԱՆԳՐԻ ԿՈՒԼԻԵՎ . . 14
Ցուցահանդեսը բաց է բոլորի համար — Գ. ՄԱԿՈՒՆՑ . 15
Մարդու արտաքինը և մարդու էությունը — Ա. ԴՈՐԲՈՎՍԿԻ 16
Գտիր քո կոչումը — Հ. ԻՍԱԲԵԿՅԱՆ . . . . 18
Հազար ու մի հարց աշխարհագրությունից . . . 18
Ինչուկ . . . . . . . . . . 19
Ինչպես գտան ստորջրյա քաղաքը — Կ. ՏԻՉԻՆԱ . . 20
Լավագույն նվերը . . . . . . . . 21
«Աշագիր ընթերցողների մրցություն» . . . . 22
Հանելուկներ — Գ. ԳԱԼՍՏՅԱՆ . . . . . 22
Պատասխաններ . . . . . . . . . 23
Սկյուռների հոգսը — Ն. ԱՍՏՈԽՈՎ

*Շապիկի առաջին էջը՝*
*Նկ. ՀՐԱՉՅԱ ԱՎԱՆԵՍՅԱՆԻ*

Գլխավոր խմբագիր՝ ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ. (պատասխանատու քարտուղար), ԽՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԵԼԻՔՅԱՆ Ս., ՍՄԲԱՏՅԱՆ Կ. (գեղ. խմբագիր), ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս.

**«Пионер»** на армянском языке. Адрес редакции: Ереван-200, ул. Кармир банаки, № 15, почт. инд. 375200.

*Հասցեն՝ Երևան—200, Կարմիր բանակի փողոց, № 15, փոստային ինդեքս՝ 375200։*

*Հեռախոսներ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96։*

ՎՖ 06233։ Պատվեր 1473։ Տպաքանակ՝ 76100։ Տպագրական 3 մամուլ։ Ստորագրված է տպագրության 28/I 1972 թ.։ ՀՍՍՀ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության վարչության Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ։ Երևան, Տերյան փ. № 91։

ԳԻՆԸ՝ 10 Կ. ԻՆԴԵՔՍ՝ 77806



Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ

# ՍԿՅՈՒՌՆԵՐԻ ՀՈԳՍԸ

Ն. ԱԼՏՈՒԽՈՎ

Վերջացել է արդեն վաղուց
Ձմռան պաշարն սկյուռների,
Որ աշնանը պահել էին
Փչակներում մեծ ծառերի:

Ամբողջ օրը նրանք անհույս
Վազվզում են անտառով մեկ
Եվ հատուկենտ կաղին, ընկույզ
Ճարում միայն ճյուղերին մերկ:

Իսկ օդն էլ դեռ սառն է այնպես,
Որ կեղևն է ճաքում ծառի,
Ու աստղեր է ցանում. ասես
Ցուրտ գիշերը ողջ անտառին:

Թարգմ. ՍՈՂՈՄՈՆ ՄԿՐՏՉՅԱՆԻ